*Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք*



Հ Կ (բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒՍ. ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՅԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

# № 4

ԱՅԿՈՒՍՀՐԱՏ ● 1936 ● ՅԵՐԵՎԱՆ

*Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք*

ՀԿ (Բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒՍ. ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՅԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

# № 4



ՀՐԱՏ ● ՅԵՐԵՎԱՆ ● 1936

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբ. Գինո Շաղգամյան, Տեխն. խմբ. Ս. Խաչատրյան
Սրբագրիչ Ա. Տ.-Մկրտչյան

Գլավլիտի լիազոր № 1100—Ա, Հրատ. № 405,
Պատվեր 315, Տիրաժ 6000, Ինդեքս П—34/РК
Հանձնվել է արտադրության 15/XI 1936 թ.
Ստորագրվել է տպագրության 22/XI 1936 թ.

Հայկուսհրատի տպարան, Երևան,
Ալլահվերդյան № 71


# ԼԵՆԻՆՅԱՆ-ՍՏԱԼԻՆՅԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՂԹԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ

*Բավականաչափ հայտնի է, թե մեր յերկիրը վորքան ծանր ժառանգություն ստացավ ցարական կարգերից, վորոնց պայմաններում* ազգային ճնշումը և ազգային յերկպառակության բորբոքումը կալվածատերերի և կապիտալիստների քաղաքական տիրապետության հիմնական միջոցներից մեկն էին հանդիսանում: *Ճնշման և ստրկացման ռեժիմը* դաժան կնիք էր դրել *նախկին ցարական Ռուսաստանի* բազմաթիվ ազգությունների էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման վրա:

*Մենք ժառանգություն ստացանք ազգային ծայրերկրների տնտեսության զարգացման հսկայական հետամնացություն, վորն արգելակում էր պրոլետարիատի յերևան*

ղալն ու զարգանալը տեղական ազգությունների մեջ և ազդում էր առաջներում հետամնաց շատ ժողովուրդների մեջ հեղափոխական շարժման զարգանալու բնույթի, ձևի ու տեմպերի վրա:

Ցարական ռեժիմի ճնշման տակ գտնվող ազգությունները արհեստականորեն պահվում էին հետամնաց, աղետ ու խավար դրության մեջ: Կրոնական ֆանատիզմը, կանանց փակ պահելը և այլն զգալի տեղ էին գրավում շատ ազգությունների կյանքում, որոնք համարյա գլխովին անգրագետ էին, անկուլտուրական, ստրկացրած, շահագործված:

Ցարական ազգային քաղաքականության արդյունք էին հանդիսանում ժողովուրդների միջև առաջացած թշնամանքը, նրանց անվստահությունը միմյանց նկատմամբ, որը խանգարում էր աշխատավորության միավորմանը՝ շահագործողների դեմ նրանց մղած պայքարում:

Համաշխարհային պրոլետարիատի հայ-



րենիքում, ՍՍՀՄ-ում, լենինյան-ստալինյան ազգային քաղաքականությունը ճիշտ կիրառելու և աշխատավոր մասսաների ինտերնացիոնալիզմի վոգով դաստիարակելու հիման վրա ստեղծվել է իրավահավասար ժողովուրդների յեղբայրական միություն, ամրանում է նրանց աշխատակցությունը սոցիալիզմի կառուցման գործում, հաջողությամբ վերացվում են ցարական ազգային քաղաքականության մնացորդները, այն է՝ ազգային յերկպառակության, ազգային թշնամանքի մնացորդները:

Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունը չսահմանափակվեց մեր յերկրի ազգերի ձևական, իրավաբանական հավասարության հռչակումով, այլ վճռաբար դիմեց նրանց փաստական անհավասարության լիակատար վերացմանը:

Կուսակցության X համագումարն այսպիսի դիրեկտիվ էր տվել.

«Կուսակցության խնդիրն է՝ օգնել վոչ-մեծռուս ժողովուրդների աշխատավորա-

կան մասսաներին՝ հասնելու առաջ անցած կենտրոնական Ռուսաստանին, օգնել նրանց, վորպեսզի ա) իրենց մոտ զարգացնեն ու ամրապնդեն խորհրդային պետականությունն այն ձևերով, վորոնք համապատասխան են այդ ժողովուրդների ազգային-կենցաղային պայմաններին, բ) իրենց մոտ կազմակերպեն տեղական բնակչության կենցաղն ու հոգեբանությունն իմացող տեղացիներից կազմված՝ մայրենի լեզվով գործող դատարան, ադմինիստրացիա, տնտեսության օրգաններ, իշխանության օրգաններ, գ) իրենց մոտ մայրենի լեզվով զարգացնեն մամուլ, դըպրոց, թատրոն, ակումբային գործը և առհասարակ՝ կուլտուր-լուսավորական հիմնարկներ, դ) կազմակերպեն և զարգացնեն մայրենի լեզվով գործող՝ ինչպես հանրակրթական, այնպես էլ պրոֆեսիոնալ-տեխնիկական բնույթ ունեցող դասընթացների և դպրոցների լայն ցանց... նպատակ ունենալով արագացրած կարգով բնիկներից վորակյալ բանվորների և խորհրդային-կուսակցական



աշխատողների կադրեր պատրաստելը»[1]...

Ընկեր Ստալինի կողմից կուսակցության XII համագումարին տրված զեկուցման թեզիսներում մատնանշվում է, վոր՝

«ազգությունների փաստական անհավասարության վերացման համար պայքարելը, հետամնաց ժողովուրդների կուլտուրական և տնտեսական մակարդակը բարձրացնելու համար պայքարելը մեր կուսակցության յերկրորդ հերթական խնդիրն է»:

Կուսակցության XII համագումարը դրեց ազգային շրջաններում արդյունաբերական օջախներ ստեղծելու խնդիրը: Կուսակցության XV համագումարն առաջարկեց հընգամյակում նախատեսել ազգային ծայրերկիրների էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման ավելի արագ տեմպ, յելակետ ունենալով այդ ծայրերկիրների տնտեսական և կուլտուրական հետամնացության աստիճանական վերացման անհրաժեշտությունը:

---

[1] Ի. Ստալին, *Մարքսիզմը և ազգային-գաղութային ցը*, 98—99, Հայկուսհրատ, 1935 թ.։

Ազգությունների փաստական անհավասարության տարրերի վերացման պայքարի խնդիրն ընդգծում է նաև ՀամԿ(բ)Կ XVI համագումարը:

Յեվ մենք տեսնում ենք, թե ինչպես ռուսական պրոլետարիատը և Խորհրդային Միության առավել առաջավոր ժողովուրդների աշխատավորության կողմից հետամնաց ժողովուրդներին ու ծայրերկրներին ցույց տրվող օգնության շնորհիվ արագորեն բարձրանում է վերջիններիս տնտեսական և կուլտուրական մակարդակը:

Ազգությունների փաստական անհավասարության տարրերի վերացումն արտահայտվում է ազգային հանրապետությունների և մարզերի արդյունաբերության բուռն աճմամբ, վորն զգալիորեն առաջ է անցնում Միության՝ իր ամբողջությամբ վերցրած՝ միջին աճումից, նոր տեխնիկային հաջողությամբ տիրապետող և իր միջից ամբողջ Խորհրդային Միության մեջ հայտնի դարձած զգալի թվով ստախանովականներ տվող



ազգային պրոլետարիատի կադրերի աճմամբ:

Ազգային անհավասարության տարրերի վերացումն արտահայտվում է ազգային հանրապետությունների և մարզերի գյուղատնտեսության ծաղկմամբ, վորը տեղի յե ունենում կոլեկտիվացման և մեքենայացման հիման վրա, ցանքի տարածությունների ընդարձակմամբ, կոլտնտեսային գյուղացիության յեկամտաբերության արագ աճումն ապահովող տեխնիկական կուլտուրաների ցանքերի զարգացմամբ:

Փաստական անհավասարության տարրերի վերացումն իր արտահայտությունն է գտնում այն բանում, վոր ազգային հանրապետություններում և մարզերում արագորեն վերացվում է կուլտուրական հետամնացությունը, աճում է գրագիտությունը, ծաղկում են կուլտուրական շինարարության բոլոր ճյուղերը, ըստ վորում այդ հանրապետություններից և մարզերից շատերը, վորոնք ցարիզմի օրով ունեյին գրագետների

չնչին տոկոս, դարձել են համատարած գրագիտության մարզեր:

Ազգային ծայրագավառների հետամնացության վերացման գործում Միության ցույց տված օգնությունն իր ցայտուն արտահայտությունը գտավ այն բանում, վոր ավելի առաջավորների հետ համեմատած՝ հետամնաց հանրապետությունների բյուջեները սկսեցին ավելի արագ աճել: Այսպես օրինակ՝ առաջին հնգամյակի շրջանում ՌՍՖԽՀ բյուջեն աճեց 207%-ով, Ուկրաինայինը՝ 285%-ով, Բելոռուսիայինը՝ 400 տոկոսով, Ուզբեկստանինը՝ 477%-ով, Թուրքմենիայինը՝ 535%-ով. Տաջիկստանում, վորը պատմական պայմանների հետևանքով մեր միութենական հանրապետություններից առավել հետամնացն էր, բյուջեն նույն ժամանակաշրջանում աճել է 950 տոկոսով: Այդ հանրապետությունները միութենական պրոլետարիատից հսկայական օգնություն են ստանում նաև վորակյալ կադրերով, մեքենաներով և այլն:



Այն բոլորը, վոր մեր հեղափոխությունը փաստորեն նվաճեց ազգությունների ազատագրման գծով, նրանց քաղաքական, տնտեսական և կուլտուրական զարգացման գծով, այդ բոլորն ամրապնդվել է մեր յերկրի պետական շինարարության ձևերով, մտցվել է ԽՍՀՄ Սահմանադրության և նրա հանրապետությունների սահմանադրությունների մեջ:

Մեր ամբողջ յերկիրը պատած է պետական ազգային գոյացությունների խիտ ցանցով: Լենինյան-ստալինյան ազգային քաղաքականությունը հաշվի յե առնում զանազան ազգությունների ազգային առանձնահատկություններն ու կարիքները, վորոնք նրանց պատմական, տնտեսական և քաղաքական զարգացման արդյունքն են:

Խորհրդային իշխանության գոյության սկզբից ևեթ մենք ականատես ենք, թե ինչպես զանազան ազգություններ իրենց ազգային պետական շինարարության մեջ պետության ձևի մեկ տիպից անցնում են

*մյուս տեղերին, վորոնք պետական ազգային իրավունքների ծավալով ավելի բարձր են:*

*Այդ ժամանակամիջոցում շատ ազգային ինքնավար մարզեր վերածվեցին ինքնավար հանրապետությունների, ինքնավար հանրապետություններ՝ միութենական հանրապետությունների, վորը ցույց է տալիս, թե կուսակցությունն ու խորհրդային իշխանությունը վորչափ հաշվի յեն առնում առանձին ազգությունների եկոնոմիկայի և կուլտուրայի աճման փաստը:*

*Խորհրդային իշխանությունը միշտ ընդգծել է, վոր* մեր Միությունն ամբողջապես և լիովին հիմնվում է կամավոր միավորման վրա, ազգությունների իրենց իսկ ինքնորոշման բազայի վրա: *Դեռևս ՌՍՖԽՀ* 1918 *թ. Սահմանադրության մեջ ասված եր.* «Դրա հետ մեկտեղ, ձգտելով ստեղծել Ռուսաստանի բոլոր ազգությունների աշխատավոր դասակարգերի իսկապես ազատ ու կամավոր, հետևաբար



և ավելի լրիվ ու ամուր դաշինք, Խորհուրդների III համառուսական համագումարը սահմանափակվում է Ռուսաստանի խորհրդային հանրապետությունների ֆեդերացիայի արմատական սկզբունքների սահմանումով, յուրաքանչյուր ազգի բանվորներին ու գյուղացիներին թողնելով իրենց սեփական իրավազոր խորհրդային համագումարում ինքնուրույն վորոշում ընդունելը այն մասին, թե նրանք ցանկանում են արդյոք և ինչ հիմունքներով՝ մասնակցել ֆեդերատիվ կառավարությանը և մնացած ֆեդերատիվ խորհրդային հաստատություններին»:

*Թե՛* 1922 *թ. վերջերին, յերբ ԽՍՀՄ կազմվեց, թե* 1923 *թ., յերբ ընդունվեց ընկեր* Ստալինի *կազմած ԽՍՀՄ Սահմանադրությունը, նույնպես ընդգծվում եր կամավորության հանգամանքի մեծ նշանակությունը մեր յերկրի ազգություններին միասնական Միության մեջ խորհրդայնաբար պետականորեն միավորելու գործում: Սահ-*

*մանադրության ռեֆերատիվ մասում ասված է.* «Խորհրդային հանրապետությունների ժողովուրդների կամքը... վստահելի յերաշխիք է, վոր այդ Միությունը իրավահավասար ժողովուրդների կամավոր միավորում է, վոր յուրաքանչյուր հանրապետության համար ապահովված է Միությունից ազատորեն դուրս գալու իրավունք, վոր Միության մուտքն ազատ է բոլոր թե՛ գոյություն ունեցող և թե՛ ապագայում ծագելիք սոցիալիստական հանրապետությունների համար»...

Նոր ստալինյան Սահմանադրության *նախագիծը հաստատում է մեր յերկրի ժողովուրդների* միավորման կամավորության *այս հիմնական դիրքավորումը*:

*«Պետական կառուցվածք» գլխում պարզորոշ հայտարարվում է այն փաստը, վոր* «Խորհրդային սոցիալիստական հանրապետությունների միությունը դաշնակցային պետություն է, կազմված իրավահավասար խորհրդային սոցիալիստական հանրապետու-



թյունների կամավոր միավորման հիմունքով»: *Ընդ սմին ԽՍՀՄ Սահմանադրության նախագիծը նախատեսում է նոր նշանակալից քայլ դեպի առաջ՝ ազգային պետական շինարարության ավելի բարձր ձևերի անցնելու գծով:*

*Առաջ* Անդրկովկասի խորհրդային հանրապետությունները *ԽՍՀՄ կազմի մեջ մտնում եյին* Անդրկովկասյան ֆեդերացիայի միջոցով: *Ըստ նոր Սահմանադրության նախագծի՝ Անդրկովկասի դաշնակից խորհրդային հանրապետություններից յուրաքանչյուրն* անմիջականորեն է մտնելու ԽՍՀՄ մեջ: *Դա հետևանք է սոցիալիստական շինարարության հսկայական հաջողությունների և ԽՍՀՄ-ի, ինչպես նաև Անդրկովկասի, ժողովուրդների բարեկամության ամրացման: Այստեղ—Անդրկովկասում այլևս չկա մի վորևե այնպիսի որգանի կարիք, վորի դերը լիներ՝ կարգավորել ներքին ազգամիջյան փոխհարաբերությունները:* Անդրկովկասյան ֆեդերացիան իր գոյության 15 տարիների

ընթացքում գերազանց կերպով կատարել է իր առջև դրված խնդիրները և այժմ պատվով է գնում պատմության գիրկը:

*Ըստ նոր Սահմանադրության նախագծի, բացի դրանից, ստեղծվում են ևս* յերկու նոր միութենական *հանրապետություններ*՝ Ղազախստանի *խորհրդային սոցիալիստական հանրապետությունը և* Կիրգիզիայի *խորհրդային սոցիալիստական հանրապետությունը:*

*Անդրկովկասի աշխատավորները, ինչպես նաև Ղազախստանի ու Կիրգիզիայի աշխատավորները հսկայական խանդավառությամբ ընդունեցին մեծ* Ստալինի *իմաստուն նախաձեռնությունը: Այն հանգամանքը, վոր նրանք մտնում են ԽՍՀՄ մեջ անմիջականորեն, նոր հնարավորություններ կտա նրանց ձևով ազգային և բովանդակությամբ սոցիալիստական սեփական կուլտուրայի հաղթական շինարարության բնագավառում: Վրաստանի, Ադրբեջանի, Հայաստանի, Ղազախստանի և Կիրգիզիայի ան-*



*միջական կերպով ԽՍՀՄ-ի մեջ մտնելը հանդիսանում է մի նոր նշանակալից հաղթանակ լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության, վորն իրականում ազատագրում է առաջներում ճնշված ու հետամնաց ժողովուրդներին:* Մեր յերկրի ծայրամասերում գտնվող բոլոր բավականաչափ խոշոր և իրենց բնակչության ազգային բաղկացությամբ ավելի կամ պակաս չափով միասնական ազգային գոյացությունները այժմ վերածված են ինքնուրույն հանրապետությունների, վորոնք մտնում են ԽՍՀՄ մեջ անմիջականորեն և նրանից ազատորեն դուրս գալու իրավունք ունեն:

*Ստալինյան Սահմանադրության նախագիծը նախատեսում է* նույնպես առավել բնակված ինքնավար մարզերի վերածումը ինքնավար հանրապետությունների: *Այդպիսի մարզերի թվին պատկանում են*՝ Կաբարդինո-Բալկարիան, Կոմին, Մարիական մարզը, Հյուսիսային Օսեթիան, Չեչենո-Ինգուշեթիան: *Այդ մարզերը բարձր զարգացման են*

հասցրել իրենց սոցիալիստական տնտեսությունը, իրենց ազգային կուլտուրան և անցնում են ազգային հանրապետությունների դրության: Ազգային մարզերի դրության մեջ մնում են այնպիսի ազգային մարզերը, վորոնց բնակչությունը փոքրաթիվ է, անգամ հարյուր հազարի սահմաններին չի հասնում: Բայց այդ մարզերն ևս այժմ կրկնապատկում են իրենց ներկայացուցչությունը ԽՍՀՄ Գերագույն խորհրդի Ազգությունների խորհրդում:

Յեթե մինչև այժմ գործող Սահմանադրության համաձայն միութենական և ինքնավար հանրապետություններն Ազգությունների խորհրդում ունեն 5-ական ներկայացուցիչ, իսկ ինքնավար մարզերը՝ 1-ական ներկայացուցիչ, ապա նոր Սահմանադրությամբ նախատեսվում է, վոր Ազգությունների խորհուրդ պետք է մտնեն՝ միութենական հանրապետություններից՝ 10-ական ներկայացուցիչ, ինքնավար հանրապետություններից՝ 5-ական ներկայացու-



ցիչ և ինքնավար մարզերից՝ 2-ական ներկայացուցիչ:

Նոր Սահմանադրության նախագիծն ընդգծում է Ազգությունների խորհրդի դերը, դիտելով այն վորպես ազգությունների շահերը պաշտպանող որգան. ԽՍՀՄ Գերագույն խորհրդի յերկու պալատները—Միության խորհուրդը և Ազգությունների խորհուրդը—իրավահավասար են: Յուրաքանչյուր որենք ուժի մեջ է մտնում յերկու պալատների հավանությունն ստանալուց հետո միայն: Այն դեպքում, յերբ յերկու պալատները չեն կարողանա համաձայնեցրած վճիռ հանգել, ԽՍՀՄ Գերագույն խորհրդի Նախագահությունն արձակում է ԽՍՀՄ Գերագույն խորհուրդը և նշանակում է նոր ընտրություններ (հոդվ. 47), դրանով իսկ ամբողջ ժողովրդի վճռին հանձնելով այն հարցերը, վորոնք տարաձայնություն եյին առաջ բերել յերկու պալատների միջև: Յեթե հաշվի առնենք նաև այն, վոր 17-րդ հոդվածով «յուրաքանչյուր դաշնա-

կից հանրապետության իրավունք է վերապահվում ազատ կերպով դուրս գալու ԽՍՀՄ-ից», ապա պարզ կդառնա, որ Նոր Սահմանադրությունը տալիս է ազգությունների իրավունքների առավելագույն ապահովություն և շահերի առավելագույն պաշտպանություն, որը հնարավոր է միայն Խորհուրդների յերկրում:

Հնգամյա պլանների իրականացման, ինդուստրացման ու կոլեկտիվացման հսկայական հաղթությունների հետևանքով ներկայումս բոլոր ազգային հանրապետություններում ու մարզերում մենք ունենք հսկայական նվաճումներ: Կանգ առնենք այդ նվաճումներից միքանիսի վրա:

## ՈՒԶԲԵԿՍՏԱՆ

ԽՍՀՄ Կենտգործկոմի և Ուզբեկստանի Ժողկոմխորհի նախագահ ընկ. Ֆայզուլլա Խոջաևը լիակատար իրավունքով կարող էր հայտարարել, որ այժմ լիովին փոխվել



է Ուզբեկստանի դեմքը: Ուզբեկստանը տնտեսական և կուլտուրական տեսակետից հետամնաց յերկրից արագորեն դառնում է խորհրդային Միության առաջավոր շրջաններից մեկը: Միայն յերեք տարվա ընթացքում արդյունաբերության ընդհանուր արտադրանքն աճել է ավելի քան յերկու անգամ: Ուզբեկստանի տերիտորիայում կառուցվում է Միության խոշորագույն էլեկտրոքիմիական կոմբինատներից մեկը՝ Չիրչիկստրոյը, որի ընդհանուր արժեքը կազմում է մոտավորապես 800 միլիոն ռուբլի: Տաշկենտում ստեղծված տեքստիլ հսկան հնարավորություն է տալիս բավարարելու Միջին Ասիայի հանրապետությունների բամբակե գործվածքների պահանջը: Հանրապետության էլեկտրոկայանների հզորությունը բարձրացել է ավելի քան 6 անգամ:

Ուզբեկստանը դարձել է համատարած կոլեկտիվացման յերկիր: Ստեղծված են սոցիալիզմ կառուցողների նոր կադրեր, աճեցվել են տասնյակ հազարներով ակտի-

միտո-կոլտնտեսականներ։ Արմատացվում է գիտության բոլոր նվաճումներն օգտագործող նոր տեխնիկա։ Փայտե ոմաչի (արոր)փոխարեն, վորն առաջ հողի մշակության հիմնական գործիքն էր, իսկ այժմ արդեն մոռացվում է դեկխանների (գյուղացիների) կողմից, Ուզբեկստանն ստացել է հարյուր միլիոն ռուբլու գյուղատնտեսական նոր ինվենտար։

Առանձնապես ցուցանշական է Ուզբեկստանի կուլտուրական հեղափոխությունը։ Բնակչության գրագիտությունը մինչ հեղափոխական ժամանակում հասնում էր միայն 3%-ի, իսկ ներկայումս արդեն հասել է 60%-ի։ Դպրոցները հիմնականում ընդգրկել են դպրոցական տարիքի յերեխաներին։ Ցերեվան են յեկել բնիկ բնակչությունից յելած հարյուրավոր ինժեներներ, տեխնիկներ, բժիշկներ և գիտնականներ։

Այժմ, 1936 թվին, Ուզբեկստանը, Խորհրդային Միության բամբակի այդ հիմնական բազան, Խորհուրդների 8-րդ համագումա-



րին դիմավորում է ավելի խոշոր նվաճումներով։ Ուզբեկստանը բամբակի մթերման տարեկան պլանն այս տարի կատարեց նոյեմբերի 1-ին—սահմանված ժամկետից 40 օր առաջ։ Հանձնված է 1,079,500 տոնն բամբակ, վորից 92 տոկոսը առաջին տեսակի։ Ընդվորում ընտիր բամբակ հանձնված է 29 տոկոս, անցյալ տարվա 5,8 տոկոսի դիմաց։

Ուզբեկստանը Խորհրդային Միության բամբակի հիմնական բազան է, վորը տալիս է հայրենի ամբողջ բամբակի յերկու յերրորդը։ Ուզբեկստանի ԽՍՀ, ժամկետից շուտ կատարելով բամբակի մթերման պլանը, պարտավորվում է Խորհուրդների համամիութենական համագումարի որերին պլանից դուրս տալու ևս 160,000 տոնն և այդպիսով կատարելու բամբակի հնգամյակը 4 տարում։

Զարգացման հնգամյա պլանի համաձայն Ուզբեկստանը 1937 թվին պիտի տար 1·234,000 տոնն բամբակ և բարձրացներ բերքատվությունը մինչև 13,4 ցենտներ մեկ

հեկտարին: Խորհուրդների համամիութենական համագումարի օրերին Ուզբեկստանը հնգամյա պլանի առաջադրությունն արտադրանքի տեսակետից կկատարի, իսկ բերքատվության առաջադրանքը կգերակատարի ամեն մի հեկտարից տալով ոչ պակաս քան 14 ցենտներ բամբակ:

Ուզբեկստանի հաղթանակների մեջ խոշորագույն դեր խաղացին մեր բամբակի դաշտերի մեքենայացումն ու քիմիացումը: Տրակտորային պարկը աճել է 63,000 ձիու ուժից 1933 թվին մինչև 198,000 ձիու ուժ 1936 թվին:

Բամբակագործության հաջողությունը վճռեցին մարդիկ—հարյուրավոր և հազարավոր կոլտնտեսականներ, կոլտնտեսական գործի կազմակերպիչներ, վարպետներ:

Նամանգանի ռայոնում «Իշտիմոյաթ» կոլտնտեսության բրիգադիր Իբրահիմ Ռախմատովը արդեն 85 ցենտներ բամբակ է հանձնել մի հեկտարից և կհանձնի առնվազն 100 ցենտներ մի հեկտարից: Կասիմովի բրիգա-



դը արդեն հանձնել է 80 ցենտներ մի հեկտարից:

Այս տարի նման բարձր բերք են տալիս նաև բազմաթիվ այլ տեղամասեր Լենինյան, Իպսաքենդի, Կույբիշևի և Պախտա-Աբադի ռայոններում:

Տասնյակ կոլտնտեսություններ 150—200 հեկտար տարածությունից կհանձնեն 50 և ավելի ցենտների բերք մեկ հեկտարից:

Բամբակ հավաքող տղամարդ և կին ստախանովականները բազմաթիվ անգամներ գերազանցեցին անցյալ տարվա ռեկորդները: Յեթե անցյալ տարի 110—120 կիլոգրամ բամբակի հավաքումը մեկ օրում ռեկորդ եր համարվում և այդպիսի հավաքողներին կարելի յեր մատերի վրա հաշվել, ապա այս տարի շատ կոլտնտեսականներ հավաքում եյին օրական ավելի քան 200 կիլո բամբակ, Նիազով Խամրակուլը Լենինյան ռայոնից օրական հավաքում եր մինչև 450 կիլո, Իսայեվա Մաշուրխանը Անդիժանի ռայոնից՝ 403 կիլո օրական:

Առանձնապես ուրախալի յե ուզբեկ կնոջ ազատագրումը: Կոլտնտեսային կարգի հաղթանակի, ինդուստրացման հաղթանակի հետևանքով իրականացվում է կանանց փաստացի հավասարությունը: Կանայք տասնյակ հազարներով մտնում են արդյունաբերական արտադրության բնագավառը, ղեկավար տեղեր են գրավում սոցիալիստական գյուղատնտեսության մեջ: Նրանք պատվավոր տեղ են գրավել ոչ միայն արտադրության բնագավառում, այլև ԲՈՒՀ-երում, ԲՏՈՒՀ-ներում և գիտական աշխարհում: Կուսակցական և խորհրդային գծով կանայք աշխատում են ամենապատասխանատու պոստերում:

Այս բոլոր մեծագույն նվաճումները պատկերավորվեցին խորհրդային իշխանության և կուսակցության ղեկավարների առաջ, ընկեր Ստալինի առաջ՝ Ուզբեկստանի բամբակագործ կոլտնտեսականների ընդունելության ժամանակ, վորից հետո Ուզբեկստանի լավագույն շինարարները պարգևատրվեցին ԽՍՀՄ շքանշաններով:



## Թ Ո Ւ Ր Ք Մ Ե Ն Ս Տ Ա Ն

Միջին Ասիայի մյուս միութենական հանրապետության մեջ՝ Թուրքմենստանում, սոցիալիստական շինարարության բնագավառում մենք ունենք նույնպիսի շլացուցիչ հաջողություններ: Այստեղ աճել են մի շարք խոշորագույն արդյունաբերական օջախներ, ինչպես որինակ՝ Կարաբուղազը, վորտեղ կան հսկայական, համամիութենական նշանակություն ունեցող քիմիական հարստություններ: Այստեղ, Կասպից ծովի ափերին, հնարավոր է մշակել մեր ծանր արդյունաբերության համար բացառիկ նշանակություն ունեցող ծծմբատի (սուլֆատի) և այլ քիմիկալիաների վիթխարի պաշարները:

Վերջին տարիներս, բամբակի և քիմիկալիաների արտադրության հետ մեկ-

տեղ, Թուրքմենստանը դարձել է ԽՍՀՄ-ի նավթ մատակարարող յերկիր: Նավթի հանույթը Թուրքմենստանում վերջին տարիներս զարգացել է մեծ չափով, վորը հեռանկարներ է ստեղծում Թուրքմենստանը մեր յերկրի խոշորագույն նավթային բազաներից մեկը դարձնելու համար:

Թուրքմենստանում մենք ունենք գյուղացիական տնտեսությունների համատարած կոլեկտիվացում: Դրա արդյունքները յերևան յեկան արդեն իսկ անցյալ տարի, յերբ Թուրքմենստանը բամբակի արտադրության ու հանձնման պլանը ժամկետից առաջ կատարելու գործում առաջիններից մեկը յեղավ ԽՍՀՄ-ում: Թուրքմենստանի բամբակագործները պատվավոր ընդունելություն գտան Կրեմլում խորհրդային իշխանության և կուսակցության ղեկավարների կողմից ընկեր Ստալինի գլխավորությամբ:

Չնայած այս տարվա կլիմայական անբարենպաստ պայմաններին (ուշացած, ցուրտ և անձրևային գարուն), Թուրքմենստանը



բամբակի հանձնման պլանն այս տարի կատարեց 9 օր առաջ, քան անցյալ տարի:

Ամեն մի հեկտարից հավաքվել է 2 ցենտներ ավելի բամբակի հումք, քան անցյալ տարի պլանի կատարման մոմենտին. 1935 թվի պլանը նախատեսնում էր 9,4 ցենտներ հումքի միջին բերք մեկ հեկտարից, իսկ 1936 թվի պլանը՝ 11,4 ցենտներ:

Հանրապետական այս միջին թվերի հետևը թաքնվում են իսկական ռեկորդային բերքի բազմաթիվ փաստեր: Ահա մի քանի օրինակ. շքանշանակիր Մուկիի Լորսին այս տարի ձեռք բերեց 60 ցենտներ միջին բերք մեկ հեկտարից կոլտնտեսության բամբակի ամբողջ տարածության վրա (216 հեկտար), իսկ առանձին բրիգադներ (մասնավորապես շքանշանակիր Աթա Արթիկի բրիգադը) իրենց ցանքամասում կհավաքեն առնվազն 70—80 ցենտներ բամբակ մի հեկտարից: Իոլաթանի շրջանի «Պախտաչի» կոլտնտեսությունը (կոլտնտեսության նախա-

դաՀ Փալվան Ովեզ) 120 Հեկտար տարածությունից ստացել է 40 ցենտների բերք մեկ Հեկտարից: Բայրամ-Ալիի շրջանի «Բոլշևիկ» կոլտնտեսությունն այս տարի ամեն մի Հեկտարից միջին Հաշվով Հավաքում է առնվազն 55 ցենտներ բամբակ:

Վո՞րն է այս Հաջողությունների գաղտնիքը: Այս Հարցի պատասխանը շատ պարզ է. կուսակցական կազմակերպության և կոլտնտեսականների պայքարը Ստալինի ցուցումները բամբակագործության բնագավառում կենսագործելու Համար: Դեռ կուսակցության XVII Համագումարում ընկեր Ստալինը մատնանշեց բամբակի սերմնաբուծության բացառիկ խճճված դրությունը, այդ խճճվածությունը շտապ վերացնելու անՀրաժեշտությունը: Այն ժամանակ Թուրքմենստանում ընդՀուպ զբաղվեցին բամբակի սերմն ըստ ռայոնների տեսակավորելու և նոր տեսակներ արմատացնելու Հարցերով: Առաջին Հաջողություններն արդեն կան:

Բամբակագործության արագ վերելքը



նպաստում է, վորպեսզի «ունևոր կյանքը ծավալվի»: Թուրքմենստանի 110 Հազար կոլտնտեսական տնտեսությունները, բամբակը Հանձնելով պետությանը, կստանան 270—280 միլիոն ռուբլի: Մերվի ռայոնի Պապոկի անվան կոլտնտեսության մեջ, Բայրամ-Ալիի ռայոնի «Բոլշևիկ» կոլտնտեսության մեջ աշխորը 32—35 ռուբլի յե, իսկ բազմաթիվ այլ կոլտնտեսություններում՝ 28—30 ռուբլի գնաՀատելը չի զարմացնում Հարևան կոլտնտեսությունների կոլտնտեսականներին, վորոնք ավելի պակաս յեկամուտ են ստանում. Նրանք գիտեն, թե ինչ միջոցներով է ստացված այդքան բարձր յեկամուտը, գիտեն, թե ինչ պետք է անել, վորպեսզի գալ տարի իրենք ևս այդպիսի յեկամուտ ստանան:

Բամբակի յեկամտաբերությունն աճելու Հետ միաժամանակ աճում է նաև անասնաբուծության յեկամուտը—անասունների թիվը 1936 թվին աճել է 30,5 տոկոսով: Աճում են նաև խաղողի և պտղատու այգիների յե-

*կամուտները· պտղատու այգիների տարածությունը վերջին տարին աճել և հասել է 3360 հեկտարից մինչև 4500 հեկտար, խաղողի այգիներինը՝ 1900 հեկտարից մինչև 3,400 հեկտար: Աճում են բանջարանոցային կուլտուրաների յեկամուտները:*

## ՏԱՋԻԿՍՏԱՆ

*Անցնենք ամենայերիտասարդ Խորհրդային դաշնակից հանրապետությանը*—Տաջիկստանին:

*Տաջիկստանն անցյալում գտնվում եր* ռուսական ցարիզմի և էմիրի բռնակալության ճնշման տակ: *Լավ հողերը պարապ եյին, յերկրի հարստությունները չեյին ոգտագործվում, իսկ աշխատավոր* բնակչությունը գտնվում եր թշվառ վիճակում, *յենթարկվելով կուլակների և բայերի դաժան շահագործմանը:* Հակահեղափոխական բասմաչական շարժումը, *վորն արգելակում եր Տաջիկստանի սոցիալիստական շինարա-*



*րությանը, լիկվիդացիայի յենթարկվեց միայն 1926 թվին, իսկ բասմաչների վերջին վոհմակները, վորոնց առաջնորդում եր բանդիտ Իբրահիմ-բեկը, վերջնականապես ջախջախվեցին միայն 1931 թվին:*

*ԽՍՀ Միության պրոլետարիատի կողմից ցույց տրվող հսկայական ոգնության շնորհիվ Տաջիկստանը համեմատաբար կարճ ժամանակամիջոցում կարողացավ դառնալ այնպիսին, վորպիսին մենք այժմ տեսնում ենք նրան:*

*Առաջներում կիսաանապատային Տաջիկստանը համարյա չուներ վորևէ արդյունաբերություն, իսկ ներկայումս այնտեղ յերևան են յեկել* ածխահանքեր, նավթարդյունաբերություն, գունավոր և ազնիվ մետաղների հանքեր, հուժկու էլեկտրոկայաններ, մետաքսագործական գործարաններ, պահածոյի գործարաններ, վորոնք տարեկան ավելի քան 40 միլիոն տուփ պտղի պահածո յեն արտադրում: *Կառուցվել է* բամբակի մշակման 6 գործարան, 2 մսի գործարան, 2 մսի

կոմբինատ: Տեղական բնակչությունից աճել են բանվորների կադրեր, վորոնց մեջ քիչ չեն և կանայք:

Առաջ Դյուշամբեն փոքրիկ դշլաղ էր (գյուղ), ներկայումս այդ ղշլաղը դարձել է Տաջիկստանի մայրաքաղաք, Ստալինաբադ քաղաքը՝ մինչև 70 հազար ազգաբնակչությամբ: Տաջիկստանը հայտնի յեր վորպես ճանապարհազուրկ մի յերկիր, վորտեղ առանձին բնակավայրերի միջև յերբեմն կես տարով հաղորդակցություն չեր լինում: Ներկայումս այնտեղ ճանապարհային և յերկաթուղային մեծ շինարարություն է կատարվում: Կառուցվում են տասնյակ հազարավոր կիլոմետր ճանապարհներ: Անմատչելի վեհաշուք Պամիրն այժմ միացված է Խորհրդային Միության հետ ճանապարհների ցանցով:

Անհրաժեշտ է նշել Տաջիկստանի խոշորագույն շինարարությունը՝ Ստալինի անվան Վախշշինը: Այդ ջրանցքը վոռոգում է 72.000 հեկտար հող, վորտեղ ցանվում է բամբա-



գույն յեգիպտական բամբակ, աճեցվում են ցիտրուսային բույսեր, վորոնք առաջներում անապատ յեղած այս վայրը դարձնում են մի ծաղկյալ անկյուն:

Բամբակի հանձնման պլանը կատարելու և գերակատարելու հետևանքով արագ կերպով աճում է կոլտնտեսականների ունևորությունը: Բավական է ասել, վոր միայն այս տարի Մոլոտովի ռայոնի 51 կոլտնտեսություն, վորոնք կազմակերպվել են Վախշի հովտում կառուցված ընկեր Ստալինի անվան ջրանցքով վոռոգվող հողերի վրա, կստանան 8 միլլիոն ռուբլու յեկամուտ բամբակի իրացման շնորհիվ: Միայն կոլտնտեսությունների ընթացիկ հաշվում (չհաշված կոլտնտեսականներին) առ 15 հոկտեմբերի կար 30 միլիոն ռուբլի, չնայած վոր ամեն 5—10 որը մի անգամ կոլտնտեսականներին ավանս է տրվում:

1935 թվին յեկամուտները բաշխելուց հետո հաշվվում եր մինչև 20 միլլիոնատեր կոլտնտեսություն, այն էլ միայն հյուսի-

սային հին բամբակի ռայոններում: Այս տարի հանրապետության մեջ մինչև 50 միլիոնատեր կոլտնտեսություն կլինի, դրանցից առնվազն 10-ը Տաջիկստանի հարավային ռայոններում:

Բարձր յեկամուտ ստանալով կոլտնտեսությունները վերակառուցում են գյուղերը: Ամենավառ օրինակ հանդիսանում է հանրապետության առաջատար «Կոմինտերն» կոլտնտեսությունը, վորին գլխավորում է բարձր բերքի վարպետ Ջուրա Բոբոկալոնովը: Դա նոր սոցիալիստական գյուղի օրինակ է: Կոլտնտեսությունը կառուցել է վարչության տուն, չայխանա, վորը բառիս բուն իմաստով նոր կոլտնտեսական կուլտուրայի օջախ է, ծննդաբերության տուն և յերեխաների մսուր: Կազմակերպված է վարչության հեռախոսային կապ բրիգադների հետ, անց է կացված բրիգադների, չայխանաների ռադիոֆիկացիա և այլն:

«Կոմինտերնի» օրինակին են հետևում



բազմաթիվ այլ կոլտնտեսություններ յերկրի հյուսիսում և հարավում:

Բամբակի բարձր բերքի համար մղված պայքարում աճել են կոլտնտեսական աշխատանքի տասնյակ հազարավոր հերոսներ: Իբրև այս պայքարի նախաձեռնող և նախամարտիկ հանդես են յեկել ընկեր Ստալինի մոտ յեղած ընդունելության մասնակիցները:

1936 թվի բերքի բախտը վորոշեցին հիանալի տեխնիկական սպառազինմանը տիրապետած կադրերը և բամբակի մշակման բոլոր պրոցեսների մեխանիզացիան: Կազմակերպվեցին 10 նոր ՄՏԿ-ներ, տրակտորային պարկը ավելացավ 650 տրակտորով: Մի տարվա ընթացքում ստացվեց 40 «Ջելյաբինսկ»: «Ունիվերսալ» տիպի տրակտորների թիվն աճել է 360 միավորով: Առաջին անգամ ստացվեցին «У-2» տիպի Ունիվերսալներ: Տրակտորային գութանների թիվը ավելացավ 330-ով, չարքացան մեքենաներինը՝ 600-ով, կուլտիվատորներինը՝ 360-ով: Տրակտորի արտադրողականությունը բարձ-

բացավ մեկ ու կես անգամ: Աշնանավարի և գարնանավարի ժամանակ տրակտորները հերկել են վարելահողերի ավելի քան յերեք քառորդը:

Տաջիկստանի աշխատավորներն իրենց հաղթանակը պարտական են այն ամենորյա ոգնությանը, վորը ցույց ե տալիս հանրապետությանը ժողովուրդների առաջնորդ, սիրելի հայր, ուսուցիչ և աշխատավորների բարեկամ ընկեր Ստալինը:

Տաջիկստանի գյուղատնտեսությունն ստացել ե միայն մոտ 26 միլիոն բանկային վարկ: Կոլտնտեսային տների շինարարության և տնտեսական կարիքների համար անցյալ յերեք յեռամյակի ընթացքում բաց ե թողնվել 26·100 խորանարդ մետր փայտանյութ: 1936 թվին կառուցվել ե 17 հիվանդանոց և տրոպիկական կայան, դպրոցների թիվն ավելացել ե 159-ով: Սկսել ե ստացվել սարքավորում 25 կոլտնտեսային ելեկտրոկայանների ու ալրաղացների համար:

Տաջիկստանի կոլտնտեսություններն ստա-



ցել են ավելի քան 150 բեռնատար ավտո: Խորհտնտեսություններից կոլտնտեսություններին ե հանձնված 11 հազար գլուխ անասուն: Կոլտնտեսականների մինչև կեսը անձնական ոգտագործման համար ունեն մեկական կով: Վերացվում ե կոլտնտեսականների կովազրկությունը—տնտեսությունների արդեն 85,3%-ն իրենց անձնական ոգտագործման համար ունեն անասուններ:

## ՀԱՅԱՍՏԱՆ

Յեթե Չինաստանին, Հնդկաստանին, Աղվանստանին սահմանակից Խորհրդային Միջին Ասիայից անցնենք Թյուրքիային ու Պարսկաստանին սահմանակից Անդրկովկասի հանրապետություններին, մենք այստեղ ես կտեսնենք, թե ինչ հսկայական նվաճումների յե հասցրել Լենին-Ստալինի կուսակցության ազգային քաղաքականությունը, վորը մեր յերկրում հաստատել ե ժողովուրդների բարեկամություն և յեղբայրություն:

Սկսենք անցյալում առանձնապես խոշտանգված հայ ժողովրդից, ավելի մանրամասնորեն կանգ առնենք նրա վրա:

Մինչև ցարական Ռուսաստանի կողմից նվաճվելը Հայաստանը հանդիսանում էր զանազան պետությունների պայքարի թատերաբեմ. Բյուզանդական կայսրությունը, Պարսկաստանը, արաբները, մոնղոլները հերթով նվաճում էին այդ երկիրը. այնուհետև Հայաստանը բաժանվեց Թյուրքիայի և Պարսկաստանի միջև:

1828 թվին տեղական ֆեոդալ մելիքների, հոգևորականության ու առևտրականների աջակցությամբ Հայաստանը նվաճվեց Ռուսաստանի կողմից, որն այդ երկիրը դարձրեց իր գաղութը: Հայաստանի աշխատավորական զանգվածները տնքում էին ցարիզմի և տեղական ֆեոդալների ու առևտրականների լծի տակ:

Երբ կապիտալիզմն Անդրկովկասում զարգացավ, Բաքվում, Թբիլիսիում, Ալլահվերդում և այլն սկսեց առաջանալ հայկական



պրոլետարիատ, որն Անդրկովկասի մյուս ազգությունների պրոլետարիատի հետ միասին հեղափոխական պայքարի դրոշ բարձրացրեց ցարիզմի և նրա բոլոր կամակատարների դեմ:

Իր տիրապետությունը պահպանելու, Անդրկովկասի հեղափոխական ուժերը ջախջախելու, մասսաները հեղափոխական պայքարից հեռացնելու նպատակով ցարիզմն Անդրկովկասի ժողովուրդների միջև արհեստականորեն բորբոքում էր ազգային թշնամանք, որը հասնում էր փոխադարձ բնաջնջման: Այսպես օրինակ՝ հայ-թրքական կոտորածի ժամանակ սրի քաշվեց մեծ քանակով հայ բնակչություն:

Իրենց հանրապետության 15-ամյակի տոնակատարության առթիվ ժողովուրդների առաջնորդ ընկեր Ստալինին ուղղած իրենց նամակում Խորհրդային Վրաստանի աշխատավորներն այսպես են բնորոշում ինքնակալության, կալվածատերերի և բուրժուազիայի ազգային քաղաքականությունը.

«Մեզ մեկմյանց դեմ եյին տանում, ու յեղբայրը յեղբոր դեմ գնաց,
և յեղբայրասպան պատերազմ ծավալվեց ալեզարդ Կովկասում:
Հային, վրացուն և Թուրքին ներքրավեցին արյունոտ վեճի մեջ,
նրանք յերկուստեք վրեժի յերկարատև ամոթանքը կրեցին»:

Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունից հետո Անդրկովկասի ժողովուրդներն անմիջապես հնարավորություն չստացան զարգանալու, վորովհետև նրանց մեջ տիրապետում եյին բուրժուական կուսակցությունները. Վրաստանում՝ իշխանության գլուխ եյին կանգնած մենշևիկները, Հայաստանում՝ դաշնակները, Ադրբեջանում՝ մուսավաթականները: Դաշնակների կառավարության օրով Հայաստանը վերջնականապես ավերվեց: Միայն խորհրդային իշխանություն հաստատվելուց հետո Հայաստանի աշխատավոր մասսաները հնարավո-



րություն ստացան բռնելու տնտեսական և կուլտուրական զարգացման ուղին:

Խորհրդային իշխանության տարիների ընթացքում Հայաստանի կերպարանքը արմատապես փոխվեց: Բերենք մի քանի թիվ, վորոնք ցույց են տալիս, թե լենինյան-ստալինյան քաղաքականությունը վորքան շատ բան է տվել հայ ժողովրդին:

Ազգային յերկպառակությամբ տառապելով, Հայաստանը վոչ միայն բնակչության աճ չուներ, այլև ջարդերի ժամանակաշրջանում նրա բնակչության թիվն զգալիորեն նվազեց: Իսկ խորհրդային իշխանության շրջանում—1920-ից մինչև 1935 թիվը—Հայաստանի բնակչության թիվն ավելացավ ամարյա 65%-ով:

Արդեն միայն այս հանգամանքը վկայում է, վոր կյանքը Հայաստանում բոլորովին փոխվել է:

Խորհրդային իշխանության տարիների ընթացքում Հայաստանի արդյունաբերության մեջ հսկայական միջոցներ են ներդրվել:

ռաջ այստեղ խոշոր արդյունաբերություն
ամարյա չկար: Իսկ վերջին տարիներում,
անավանդ յերկրորդ հնգամյակի տարինե-
ում, Հայաստանի արդյունաբերության
եջ ներդրվել է մոտ. 480 միլիոն ռուբլի:
ասկանալի յե, որ մի այնպիսի համեմա-
ատաբար փոքր յերկրի համար, որի բնակ-
ությունն ընդամենը մեկ միլիոն է հաշ-
վում, այդ թիվը հսկայական է:

Մինչհեղափոխական շրջանում, 1913-ից
մինչև 1919 թիվը, արդյունաբերության
եսակարար կշիռը Հայաստանի ժողովր-
դական տնտեսության մեջ պակասեց, 13%
-ից իջնելով 7%-ի (դաշնակների իշխանու-
թյան օրով): Խորհրդային իշխանության
օրով մենք ունենք Հայաստանի արդյունա-
բերության տեսակարար կշռի աճման հե-
տևյալ թվերը. 1927 թվին՝ 21%, 1932 թվին՝
58%, 1935 թվին՝ 70%: Միայն Լենինա-
կանի տեքստիլ կոմբինատն այս տարի տա-
լիս է 17 միլիոն 600 հազար մետր բյազ,
402 տոնն տրիկոտաժ: Լենինականի մսի



կոմբինատը տարեկան արտադրում է կես
միլիոն փութ միս: Դավալուի ցեմենտի
գործարանի տարեկան արտադրողական կա-
րողությունն է 108 հազար տոնն ցեմենտ:
Կիրովականի քիմկոմբինատը տարեկան տա-
լիս է 14 հազար 200 տոնն-լիտր կարբիդ:
Այսպիսով հետամնաց, ագրարային յերկրից
Հայաստանը վերածվում է ինդուստրիալ
յերկրի: Հայաստանի արդյունաբերությունը
1929-ից մինչև 1934 թիվն աճել է 9½ ան-
գամ: Ահա յե ինդուստրիալ հեղափոխու-
թյունը, որն արմատապես փոխում է յերկ-
րի ամբողջ կերպարանքը:

Հայաստանում կառուցվում է Միության
ամբողջ տնտեսության համար հսկայական
նշանակություն ունեցող սինթետիկ կաու-
չուկի արտադրության արդյունաբերական
գիգանտը—«ՍԿ-Սովպրենը»: Օգտագործվում
են յերկրի բնական ռեսուրսները, ջրային
էներգիան: Կառուցվել են մի շարք հիդրո-
էլեկտրոկայաններ. արդեն գործարկման է
հանձնվում Քանաքեռգեսի առաջին հերթը:

կան պղնձի հանքաքարի խոշոր ռեսուրսներ, վորոնց բազայի վրա զարգանալու յեն Ալլահվերդու և Զանգեզուրի պղնձահանքերը, վորոնք կհանդիսանան Միության գունավոր մետաղագործության առաջնակարգ բազաներից մեկը: Ղափանի շրջանում ձեռնարկված ե մոլիբդենի մշակման աշխատանքը: Ցուցանշական ե Հայաստանում սպառվող ելեկտրոեներգիայի քանակի աճը: 1913թ. ելեկտրական եներգիայի սպառումը կազմում եր 3 հազար կիլովատ-ժամ, 1927-ին՝ 4 հազար կիլովատ-ժամ, 1932 թվին 23 հազար կիլովատ-ժամ, իսկ 1935 թվին՝ 43 հազար կիլովատ-ժամ ելեկտրոեներգիայի սպառում:

Այժմ գործարկման հանձնվող Քանաքեռգեսը՝ Սևան-Զանգվի կասկադի այդ հսկան—տալու յե 88 հազար կիլովատ եներգիա, վորով կրկնապատկվում ե գոյություն ունեցող ելեկտրոեներգիայի քանակը Հայաստանում:

Ինդուստրիայի աճման հետ միաժամանակ



տեղի յե ունենում պրոլետարիատի քանակի աճը: 1922 թվին Հայաստանում հաշվվում եր ընդամենը 15·400 բանվոր, իսկ 1935 թվին նրանց թիվը հասավ արդեն 106 հազար հոգու:

Արմատապես փոխվեց հայկական գյուղի դեմքը: Կոլեկտիվացմամբ ընդգրկված ե տնտեսությունների 85%-ը: Գյուղատնտեսությունը վերակառուցված ե մեքենայացման և նորագույն ագրոտեխնիկայի արմատացման բազայի վրա: Այժմ Հայաստանում ունենք 23 ՄՏԿ, տրակտորների ընդհանուր թիվը հասնում ե 1200-ի, կոմբայններինը՝ մոտ 60-ի:

Խորհրդային իշխանության օրոք գյուղատնտեսության մեջ ներդրված ե 282 միլիոն ռուբլի, իսկ վողջ ժողովրդական տնտեսության մեջ՝ մեկ միլիարդ 150 միլիոն ռուբլի:

Ցանքերի տարածությունն զգալիորեն աճել ե, մանավանդ տեխնիկական մշակույթներինը:

Վերջին յերկու տարում կոլտնտեսություններում խոշոր յեղջերավոր անասունների թիվն ավելացել է 233 տոկոսով, իսկ մանր անասուններինը՝ 279 տոկոսով: Ներկայումս բոլոր անասունների ավելի քան 80 տոկոսը պատկանում է կոլտնտեսություններին և կոլտնտեսականներին:

Կոլտնտեսություններն ունեն մոտ 2013 անասնաբուծական ապրանքային ֆերմա: Այս տարիների ընթացքում կոլտնտեսությունները կառուցել են ավելի քան 1200 գոմ:

1935 թվին միմիայն անասնաբուծական կոլտնտեսություններում կոլտնտեսականների միջև ըստ աշխօրերի բաշխվել է 21 միլիոն ռուբլու յեկամուտ:

Այս բոլոր նվաճումների հիման վրա աճում է Հայաստանի աշխատավորության նյութական բարեկեցությունը: Հայաստանի գյուղացիությունը, որ անցյալում չքավոր էր ու բատրակ, ներկայումս ամուր կերպով նվաճել է ունևոր, ուրախ և յերջանիկ կյանք:



Յերկրի տնտեսական աճը հասցրել է նրան միանգամայն բացառիկ կուլտուրական շինարարության:

Ցարիզմի և ապա դաշնակների իշխանության օրով Հայաստանում կար ընդամենը 4000 սովորող, բոլորովին չկային ԲՈՒՀ-եր, ԲՏՈՒՀ-ներ և տեխնիկումներ: Խորհրդային իշխանության օրով Հայաստանում մենք արդեն ունենք մեծ թվով բարձրագույն կրթական հաստատություններ, որոնք ընդգրկում են 5300 ուսանող: Տեխնիկումներում սովորում են 7 հազար հոգի, բանֆակներում՝ 2 հազար հոգի:

Մինչև հեղափոխությունը Հայաստանի դպրոցներում սովորում եյին ընդամենը 4 հազար հոգի: Հիմա Հայաստանի տարրական և միջնակարգ դպրոցներում սովորում են 242·000 հոգի: Հայաստանի բոլոր դպրոցներում և ուսումնական հաստատություններում սովորողների թիվն այժմ հասնում է 330·000-ի (չհաշված անգրագիտության և կիսագրագիտության վերացման գծով սովորողները):

Ցեթե առաջ նախադպրոցական կրթության մասին Հայաստանում վոչ վոք գաղափար չուներ, ապա այժմ մանկապարտեզներն ու մանկական հրապարակներն ընդգրկում են ավելի քան 67 հազար յերեխա:

Խորհրդային յերկիրը հետևում է, թե ինչպես է ծաղկում ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական արվեստը Հայաստանում: Հայկական թատրոններն այժմ շատ աչքի ընկնող տեղ են գրավում: Նրանք բավականաչափ հայտնի յեն վոչ միայն Հայաստանում, այլև նրա սահմաններից դուրս: Հայաստանի արվեստի բնագավառում ունեցած հաջողությունների համար մի խումբ արվեստի աշխատողներ պարգևատրված են շքանշաններով:

Հայաստանում հրատարակչական գործն ևս զգալիորեն զարգացել է: Հայաստանը գրականությամբ շատ աղքատ եր: Այնինչ միայն 1934 թվին այստեղ հրատարակվել են մոտ հազար անուն զանազան գրքեր: ԽՍՀՄ-ում հայերեն լեզվով հրատարակվող լրա-



գրերի քանակը նույնպես արագորեն աճում է: 1923 թվին հրատարակվել է 14 անուն լրագիր, 1930 թվին՝ 30 անուն, 1931-ին՝ 44 անուն, 1932-ին՝ 60 անուն, 1933 թվին՝ 80 անուն, 1934 թվին՝ 82 անուն, 1935 թվին՝ 88 անուն և 1936 թվին՝ 94 լրագիր: Ազգային մամուլի այսպիսի հսկայական աճը հնարավոր է միայն մեր յերկրում, վորտեղ կիրառվում է մեր կուսակցության լենինյան-ստալինյան ազգային քաղաքականությունը: Հայ բնակչությունը համարյա գլխովին գրագետ է: Ահա թե ինչու յե աճում մայրենի լեզվով հրատարակվող լրագրի պահանջը, և լրագիրը հանդիսանում է մասսաների հզոր կազմակերպիչ՝ բոլշևիկյան հաղթանակների համար մղվող պայքարում: Հարկավոր է նշել, վոր հայերեն լեզվով լրագրերը լույս են տեսնում վոչ միայն խոշոր քաղաքներում և քաղաքատիպ բնակավայրերում, այլև գյուղական վայրերում և բանվորական ավաններում:

1935 թվին հայերեն լեզվով հրատարակ-

վում էին 17 ժուռնալ, որից 15-ը Երևանում և մեկական հատ Թբիլիսիում ու Բաքվում:

Հարկավոր է նշել նաև մարքսիզմ-լենինիզմի կլասիկների մի շարք գործերի թարգմանությունների լույս ընծայումը հայերեն լեզվով: Հայաստանի Կուսհրատը 1935 և 1936 թ.թ. լույս է ընծայել Մարքսի և Էնգելսի հատընտիր նամակների թարգմանությունը, Մարքսի «Կապիտալի» I և II հատորները, Էնգելսի «Լյուդվիգ Ֆոյերբախ» աշխատությունը, Լենինի մի շարք աշխատությունների, այդ թվում վեց հատորյակի և «Փետրվարից դեպի Հոկտեմբեր» ժողովածուի թարգմանությունները (վերջինս, ինչպես հայտնի յէ, պարունակում է Լենինի այդ ժամանակաշրջանի բոլոր կարևորագույն գրվածքները), Ստալինի մի շարք աշխատությունների՝ «Լենինիզմի հարցերը», «Սոցիալ-դեմոկրատական թեքումը մեր կուսակցության մեջ», «Աջ թեքումը ՀամԿ(բ)Կ մեջ», «Բոլշևիզմի պատմության



մի քանի հարցերի մասին», «Մարքսիզմ և ազգային-գաղութային հարցը» թարգմանությունները, ընկեր Ստալինի վերջին տարիների ճառերը և այլն:

Հայաստանում հատուկ ուշադրություն է դարձվել ազգային փոքրամասնությունների, մանավորապես թուրքերի և քրդերի կուլտուրական զարգացման վրա: Մինչև այժմ քրդերը չունեյին իրենց այբուբենը: Հիմա նրանք ստացել են իրենց ազգային գիրը, և այդ գրերով հրատարակվում են քրդերեն գրքերն ու լրագրերը: Քուրդ աշխատավոր մասսաները հնարավորություն ստացան իրենց մայրենի լեզվով կարդալու Մարքսի և Էնգելսի «Կոմունիստական մանիֆեստը»: Քրդերի մեջ արագորեն զարգանում է դպրոցաշինարարությունը: 1927–1928 ուսումնական տարում կային ընդամենը 11 քրդական դպրոց 395 սովորողով, իսկ 1934–35 թ. նրանց դպրոցների թիվն արդեն 38 էր և այդ դպրոցներում սովորողների ընդհանուր քանակը՝ 3400 հոգի: Արագորեն աճում են

քրդական ազգային կադրերը, վորոնց մեջ արդեն կան պրոֆեսորներ, ագրոնոմներ, գրողներ, մանկավարժներ և այլն: Քրդական տեխնիկումը պատրաստում է սոցիալիստական շինարարության ակտիվիստների նոր կադրեր:

Աճում է թուրքական դպրոցների թիվը: Այսպես օրինակ՝ 1927–28 ուսումնական տարում Հայաստանում կային 98 թուրքական դպրոցներ 4437 սովորողով, իսկ 1934–35 ուսումնական տարում թուրքական դպրոցների թիվը բարձրացավ 215-ի և նրանց աշակերտների թիվը՝ 20879-ի:

Հանրապետության ազգային փոքրամասնությունները ունեն մայրենի լեզվով հրատարակվող լրագրեր, գեղարվեստական և քաղաքական գրականություն և այլն:

Հարկավոր է ասել նաև այն մասին, թե Հայաստանում վորքան առաջ է քայլել առողջապահությունը: 1919 թվին Հայաստանում կար ընդամենը 7 հիվանդանոց, իսկ ներկայումս այնտեղ արդեն կա 143 հիվանդանոց:



Նոր պայմանները հետամնաց յերկիրը վերածում են առաջավոր յերկրի: Ստեղծվում է նոր, սոցիալիստական, անդասակարգ հասարակության նոր մարդը, կոմունիզմի ակտիվ շինարարը:

## ՎՐԱՍՏԱՆ

Վրաստանում խորհրդային իշխանություն հաստատելուց հետո այդ հանրապետության աշխատավորները հսկայական հաջողությունների յեն հասել տնտեսական և կուլտուրական շինարարության գործում: Վրաստանը, վոր ռուսական ցարիզմի մի հետամնաց գաղութ էր, դարձավ առաջավոր ինդուստրիալ հանրապետություն:

Մինչդեռ Խորհրդային Միության ամբողջ արդյունաբերության ընդհանուր արտադրանքը 1913 թվի համեմատությամբ 1935 թվին կազմում էր 642%, Վրաստանում նա կազմել է 1908%:

Վրաստանում ստեղծվել են արդյունաբե-

բության մի շարք բոլորովին նոր ճյուղեր: Արդյունաբերության արտադրանքի տեսակարար կշիռը Վրաստանում հասնում է ժողովրդական տնտեսության ընդհանուր արտադրանքի 74,9%-ին:

Վրաստանի արդյունաբերական-տնտեսական զարգացման համար ստեղծվում է հզոր էներգետիկ բազա: Վրաստանի ելեկտրոկայանների հզորությունը 1935 թվին հասել էր 105 հազար կիլովատի, իսկ 1936 թվին բարձրանալու և հասնելու է 162 հազար կիլովատի, ավելանալով ավելի քան 20 անգամ 1913 թվի համեմատությամբ:

Տեխնիկապես վերակառուցվել են Տկվիբուլիի հին ածխահանքերը, Ճիաթուրիի մանգանի արդյունաբերությունը: Բաթումիում կառուցվել են խոշոր նավթաթորիչ գործարաններ, վորոնք տարեկան վերամշակում են 3 միլիոն տոնն հում նավթ:

Ստեղծված է թեթև ու սննդի հզոր արդյունաբերություն: Թեթև արդյունաբերության արտադրանքի արժեքը 1923-1924



թվերից ի վեր ավելացել է 40 անգամ, 1935 թվականին հասնելով 88·557 հազար ռուբլու:

Խորհրդային իշխանության հաստատելուց հետո Վրաստանում կառուցվել ու ամբողջովին վերակառուցվել է ընդամենը 117 զանազան արդյունաբերական ձեռնարկություն, վորոնց տեսակարար կշիռը կազմում է Վրաստանի արդյունաբերության հիմնական ֆոնդերի 96,7%-ը:

Խորհրդային Վրաստանում զարգանում են արժեքավոր տեխնիկական մշակույթներ, ինչպես են՝ թունդը, եվկալիպտները, յեթերատուները և այլն: Խորհրդային յերկրի աշխատավորներին Վրաստանը տալիս է միլիոնավոր ցիտրուսային պտուղներ: Վրաստանում խիստ զարգացած են այգեգործությունն ու խաղողագործությունը, ինչպես նաև մետաքսագործությունը:

Գյուղատնտեսության մեջ արմատացվում է ագրոտեխնիկան: Վրաստանի շրջաններում ստեղծված են 37 մեքենատրակտորային կա-

յաններ: Վրաստանի սոցիալիստական դաշտերում աշխատում են 1710 տրակտոր և տասնյակ հազարավոր զանազան գյուղատնտեսական մեքենաներ: Պետական գյուղատնտեսական ձեռնարկություններում (խորհտնտեսություններ, ՄՏԿ և այլն) զբաղված են 26 հազար մշտական գյուղատնտեսական բանվորներ:

Վրաստանի կոլտնտեսություններում միավորված է գյուղացիական տնտեսությունների 75%-ը: Կոլտնտեսությունների եկամուտները տարեցտարի ավելանում են, աճում է աշխորի արժեքը: Վրաստանում արդեն կան մի շարք միլիոնատեր կոլտնտեսություններ, այսինքն այնպիսի կոլտնտեսություններ, որոնց եկամուտը մեկ միլիոն ռուբլուց ավելի է:

Խորհրդային իշխանությունն ապահովել է Վրաստանի ժողովուրդների կուլտուրայի իսկական ծաղկումը: Հոկտեմբերի 20-ամյակին Խորհրդային Վրաստանը դառնում է համատարած գրագիտության երկիր:



Վրաստանում մտցված է երեխաների ընդհանուր տարրական կրթություն: Վրաստանի տարրական և միջնակարգ դպրոցներում այժմ սովորում են 614 հազար երեխաներ և աշխատում են 19 հազար մանկավարժներ:

Ցարիզմի օրով Վրաստանում վոչ մի բարձրագույն դպրոց չի եղել: Այժմ Խորհրդային Վրաստանն ունի 19 բարձրագույն դպրոց:

Մեծ թափ է ստացել գիտահետազոտական աշխատանքը: Ստեղծված են 120 զանազան գիտահետազոտական հաստատություններ, և նրանցից շատերի աշխատանքը մեծ արժեք է ներկայացնում ամբողջ Միության համար:

Ծաղկում են արվեստն ու գրականությունը: Վրաստանում գործում է 47 թատրոն, վորոնցից Ռուսթավելու անվան թատրոնը Խորհրդային Միության լավագույն թատրոններից մեկն է:

Վրաստանում հրատարակվել է ավելի քան 35 միլիոն գիրք: Մարքսիզմի կլասիկների

աշխատությունները վրացերեն լեզվով հրատարակվել են հարյուր հազարավոր օրինակներով:

Այս բոլոր հաջողություններին Խորհրդային Վրաստանը հասել է լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության ճիշտ կիրառման շնորհիվ, և այդ քաղաքականությունը Վրաստանի աշխատավորական մասսաներին ներգրավել է ԽՍՀՄ ժողովուրդների մեծ ընտանիքի մեջ,—ժողովուրդներ, որոնք վստահ ու համերաշխ կերպով սոցիալիզմ են կառուցում:

## ԱԴՐԲԵՋԱՆ

Եթե մենք անցնենք Անդրկովկասի երրորդ հանրապետությանը՝ Ադրբեջանի ԽՍՀ-ին, ապա կտեսնենք, որ նա յել է բարձրացել ու մտել Միության առաջավոր հանրապետությունների շարքը: Այս բանը կարելի յե պատկերավորել Ադրբեջանի ժողովրդական տնտեսության մեջ կատարված կապի-



տալ ներդրումների աճումով: 1931թ. կապիտալ ներդրումները Ադրբեջանում կազմում եյին 535,5 միլիոն ռուբլի, իսկ 1934 թվին դրանք հասան մեկ միլիարդ ռուբլու: Այդ ներդրումների հիմնական մասսան հատկացվում է արդյունաբերությանը, գլխավորապես նավթարդյունաբերությանը:

Արդյունաբերության ընդհանուր արտադրանքը Ադրբեջանում վերջին չորս տարիների ընթացքում աճել է համարյա 90%-ով՝ 1926–27 թվականների անփոփոխ գներով:

Ադրբեջանի ժողովրդական տնտեսության մեջ առաջատար տեղը պատկանում է նավթարդյունաբերությանը, որը կենտրոնացած է Ափշերոնյան թերակղզում, Բաքվի շրջանում: Նավթի արդյունահանումով Ադրբեջանը Միության մեջ առաջին տեղն է գրավում, տալով նավթի համամիութենական հանույթի կեսից ավելին: Նավթի հանույթը 1913թ. կազմել է 7,7 միլիոն տոնն, 1920թ. մուսավաթականների և ինտերվենտների տիրապետության ժամանակաշրջա-

նում՝ ընկավ մինչև 2 միլիոն տոնն, իսկ 1934 թ. հասավ արդեն 19,1 միլիոն տոննի, 1936 թ.՝ 22 միլիոնի (պլանով)։

Ստախանովյան շարժումը, ընկեր Ստալինի ճառը ստախանովականների համամիութենական խորհրդակցությանը նոր վերելք ստեղծեցին Ադրբեջանի նավթահանքերում։ Նավթի հանույթը բուռն թափով ավելանում է Բաքվի բոլոր նավթահանքերում։ Նավթահանքերի ստախանովականները մեծ հաջողությամբ յուրացնում են խոր փորման տեխնիկան, գերազանցելով մինչև այժմ գոյություն ունեցած նորմաները։

Խորհրդային Ադրբեջանի նվաճումները պակաս ռելյեֆ ու առարկայորեն չեն յերևում նաև արդյունաբերության մյուս ճյուղերում։ Նախկին Թաղիյեվի տեքստիլ գործարանի, ցեմենտի գործարանների, Գետաբեկի պղնձաձուլական գործարանի բացառությամբ, Ադրբեջանի մնացած բոլոր ձեռնարկությունները տնայնագործական տիպի ձեռնարկություններ եյին։ Չնայած բամբակի



առկայությանն ու զարգացած վոչխարաբուծությանը, Ադրբեջանը ցարիզմի որով չուներ իր տեքստիլ արդյունաբերությունը։ Հանրապետության գյուղացիների և արհեստավորների պապական արհեստը՝ մետաքսագործությունն ու մետաքսաթելի պատրաստումը չեր բարձրանում կիսաֆաբրիկատներ տալու տնայնագործական մակարդակից։ Լեռնահանքային և մյուս բոլոր անսպառ բնական հարստությունները մնում եյին առանց ոգտագործման և չեյին մշակվում։ Խորհրդային Ադրբեջանի գոյության սկզբից ի վեր հանրապետության մեջ ստեղծվել են արդյունաբերության նոր ճյուղեր, յերկրի ինդուստրացման խոշորագույն ոջախներ (Գյանջա, Նուխի, Նախիջևան, Ստեփանակերտ և այլն), հզոր էլեկտրոկայաններ (Կարասախկալի, Թերթերգեսի և այլ հիդրոէլեկտրոկայանները) և ինժեներական կառուցվածք ունեցող վոռոգման սիստեմներ (Միլի, Ալիգբեկովի, Մյասնիկովի, Որջոնիկիձեյի անվան և այլ ջրանցքները)։

Սկսված է Դաշքեսանի յերկաթահանքի արդյունաբերական օգտագործումը: Դաշքեսանչինը հանդիսանալու յե վորպես բազա՝ Անդրկովկասում մետաղաձուլական կոմբինատ ստեղծելու համար: Սկսված է Ճրագիձորի ծծմբաքարի հանքի շահագործումը: Ծծմբաքարի, ալունիտի հանքի (Զագլիկ), Ապշերոնի աղալճերի մի շարք այլ հանքերի բազայի վրա մշակվել է Ադրբեջանի քիմիականացման լայն նախագիծը, վոր նախատեսում է մի ամբողջ շարք ծծմբաթթվային, սուպերֆոսֆատի, սոդայի և այլ քիմիական գործարանների կառուցումը: Այդ գործարանների մի մասն արդեն կառուցվել է և գործարկվել: Հաջողությամբ լուծվել է ազոտի և սինթետիկ կաուչուկի ստացման պրոբլեմը: Հետախուզական և նախագծման աշխատանքներ են կատարվում Մինգեչաուրի վիթխարի ամբարտակի կառուցման համար, վորը ջուր կտա բամբակի մշակության համար պիտանի նոր հարյուր հազարավոր հեկտար տարածությունների:



Ստեղծված է հանրապետական մետաքսարդյունաբերություն՝ նորագույն տեխնիկայի կիրառման հիմունքով: Նուխում կառուցվել է տեխնիկայի վերջին խոսքով էլեկտրավորված մետաքսամանարան, վորն իր մեծությամբ յերկրորդն է Յեվրոպայում. մետաքսամանարան է կառուցված նաև Ստեփանակերտում: Տառացի ասած՝ վոչինչ չեղած տեղում ստեղծվել է հզոր կարի արդյունաբերություն, կառուցվել են մի շարք սղոցարաններ, վորոնք մասամբ եքսպորտային նշանակություն ունեն, ստեղծված են կաշու արդյունաբերության գործարանային ձեռնարկություններ, կազմակերպված է տրիկոտաժի լայն արտադրություն, Բաքվում կառուցվել են մի շարք խոշոր հացագործարաններ և տեխնիկայի վերջին խոսքի համաձայն սարքավորված՝ մսի վիթխարի ինդուստրիալ կոմբինատ: Մեծ հաջողության են հասել սննդարդյունաբերության զարգացման և ձկնարդյունաբերական տնտեսության վերակառուցման ու ընդարձակման բնագավառում:

Արդեն իսկ 1928-29թ.թ. Խորհրդային Ադրբեջանը կարողացել էր վերականգնել իր գյուղատնտեսությունը և ստեղծել նրա սոցիալիստական վերակառուցման նախադրյալները: Ադրբեջանի գյուղը, կոլտնտեսային ուղին բռնելով, կուսակցության ղեկավարությամբ ու առաջավոր տեխնիկայի օգնությամբ վստահորեն ընթանում է դեպի ունևոր և կուլտուրական կյանքը:

Գյուղացիական տնտեսությունների կոլեկտիվացման տոկոսն Ադրբեջանում 1935 թվին բարձրացավ 72,4-ի, հիմնական բամբակագործական շրջաններում հասնելով 77,8-ի:

Ադրբեջանի հաջողությունները առանձնապես մեծ են ԽՍՀ Միության բամբակի անկախության և մասնավորապես բարձրորակ յեգիպտական բամբակի աճեցման համար մղվող պայքարում: Յեգիպտական բամբակն Ադրբեջանում առաջին անգամ ցանվել է 1927 թվին, այնուհետև 1932 թվին ցանվել է 8 հազար, իսկ 1935 թվին 45.616 հեկ-



տար, ըստ որում բամբակի ցանքերի ընդհանուր տարածությունն Ադրբեջանում այդ ժամանակ կազմում էր 108.010 հեկտար:

Հանրապետության գյուղատնտեսության մեջ միայն վերջին 4 տարվա ընթացքում ներդրվել է 217,8 միլիոն ռուբլի: Պետության այս լայն օգնության հիման վրա՝ Ադրբեջանի գյուղում աճել ու ամրացել է խորհտնտեսությունների, կոլտնտեսությունների, մեքենատրակտորային կայանների և ապրանքային ֆերմաների ցանցը, կատարվել են մեծ աշխատանքներ ոռոգման և այլ ասպարեզներում: Ադրբեջանում գտնվող Մինգեչաուրի անասնապահական խորհտնտեսությունը և Շամախու խաղողաբուծական խորհտնտեսությունն Անդրկովկասի ամենախոշոր խորհտնտեսություններն են:

Մեծ արդյունք տվող տեխնիկական, մերձարևադարձային և ցիտրուսային նոր մշակույթները (վերջինները՝ Լենքորանի և այլ ծովամերձ շրջաններում), որ հաջողությամբ արմատացվում են Ադրբեջանում,

բարձրացնում են գյուղացիության բարեկեցությունը: Վերացվում է միջնադարի մնացուկ հանդիսացող քոչվորությունը:

Ընկերներ Ստալինի և Մոլոտովի այն դիրեկտիվը, վոր վերաբերում է քոչվոր-բամբակագործներին մասսայական քոչից հետ պահելուն, հաջողությամբ կենսագործվում է մի շարք հատուկ միջոցառումների հիման վրա (առողջապահական միջոցառումներ, խմելու ջրի և ջրքամիչների մատակարարում, ամառային արոտատեղերի կազմակերպում լեռներում և այլն). այդ նպատակով ուժեղացված է դաշտավայրում մնացող քոչվոր-բամբակագործների սպասարկումը:

Մինչև Ադրբեջանի խորհրդայնացումը Ադրբեջանում գոյություն ուներ հիմնականում ֆեոդալական կարգերի կուլտուրա: Քաղաքներում և գյուղերում յերեխաները մեծ մասամբ սովորում եյին մեչիտներին առընթեր հոգևոր դպրոցներում: Այդ դպրոցների դասատուները գլխավորապես մոլլաներն եյին, տնաբույս քարոզիչները,



պարսկական Թավրիզ, Արդաբիլ և այլ քաղաքներից յեկած մարդիկ:

1905 թվից հետո բացվել եյին նաև մի քանի «աշխարհիկ» դպրոցներ, վորոնք ունեյին կղերական ուղղություն: (Բացի դրանից, ցարիզմը բացած ուներ նաև ռուսաց դպրոցներ, բայց այդտեղ մեծ մասամբ սովորում եյին առևտրականների, կալվածատերերի և ունևորների զավակները): Մայրենի լեզուն դպրոցում արգելված եր: Ադրբեջանի հիմնական բնակչության մեջ գրագետների թիվը հեղափոխությունից առաջ շատ չնչին եր. գրագետների մեծ մասը բեկերի, կալվածատերերի և քաղաքային բուրժուազիայի զավակներն եյին:

Մուսավաթի իշխանության շրջանում դպրոցների թիվը վոչ միայն չավելացավ, այլև մի շարք տեղերում փակվեցին յեղած դպրոցները:

Ներկայումս Խորհրդային Ադրբեջանն իրագործում է անգրագիտության լիկա-

տար վերացումը: Այդ մեծագույն կուլտուրական հաղթանակն այդքան կարճ ժամանակամիջոցում ձեռք է բերվել մեծ չափով նոր լատինական այբուբեն մտցնելու շնորհիվ: Զուր չէ, որ Լենինը նշեց, թե նոր այբուբենը, այդ—մեծ հեղափոխություն է Արևելքում:

Տարրական և ոչ լրիվ միջնակարգ դպրոցների աշակերտության թիվը, որ 1931 32թ.թ. 358,3 հազար էր, 1934–35 թվին աճեց ու հասավ 479,3 հազար հոգու. թուրք աշակերտուհիների թիվը, որ 1931-32թ.թ. 76.485 էր, 1934–35 թվին հասավ 111.708-ի:

Ուսուցումը կատարվում է մայրենի լեզվով ոչ միայն թուրքերի համար, այլև ազգային փոքրամասնությունների, այն է՝ թալիշների, թաթերի, լեզգիների, ավարների, հրեաների, հայերի, քրդերի, թաթարների, ասորիների, հույների և այլոց համար: Ազգային փոքրամասնություններն այժմ ունեն իրենց լատինականացրած նոր այբուբենը: Թալիշները, թաթերն ունեն իրենց թատ-



րոնը. լեռնաբնակ հրեաները, թալիշները, գերմանացիները և այլն՝ ունեն իրենց մայրենի լեզվով հրատարակվող լրագրերը:

Աճում է դպրոցաշինարարությունը: 1935 թվի ընթացքում կառուցվել է 91 դպրոց, մոտ 10 միլիոն ռուբ. արժողությամբ. այդ 91 դպրոցից 10-ը կառուցվել է Բաքվում:

Ադրբեջանն ունի 15 բարձրագույն դպրոց, որտեղ 1935 թվականին սովորում էին 11.028 ուսանող, ըստ որում դրանց կեսը թուրքեր էին: Ստեղծված են մի շարք գիտական և գիտահետազոտական ինստիտուտներ ու հաստատություններ: ԽՍՀՄ-ի Գիտությունների ակադեմիայի Ադրբեջանի բաժանմունքը, Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտը և այլն պատրաստում են գիտական աշխատողների բարձրորակ պրոֆեսորական կադրեր:

Խորհրդային Ադրբեջանը նշանակելի հաջողություններ ունի արվեստի, մանավանդ թատերական արվեստի ճակատում: Ադրբեջանում կա 13 մնայուն թատրոն:

Հեղափոխությունից առաջ Ադրբեջանում հրատարակվում եյին մի քանի թուրքական լրագրեր, որոնք ունեյին չնչին տիրաժ, իսկ այժմ լրագրեր կան հանրապետության բոլոր շրջաններում, խոշոր գործարանային ձեռնարկություններն ել ունեն իրենց մասսայական թերթերն ու բազմատիրաժները։ Ադրբեջանի թերթերի և ժուռնալների յերկու յերրորդը հրատարակվում ե թուրքերեն լեզվով. Մարքսի, Ենգելսի, Լենինի և Ստալինի շատ աշխատություններ թարգմանված են թուրքերեն լեզվով։

1933 թվականին Բաքվում կառուցվել և շահագործման ե հանձնվել «Մամուլի տունը», որի նախագծային հզորությունը կազմում ե 20 հազար տպագրական թերթ, 110 միլիոն տպվածք (ոտտիսկ)։

Կիրառված են բնակչության առողջացման, բուժօգնության գործի դրվածքի հսկայական ձեռնարկումներ,—օգնություն, որին հեղափոխությունից առաջ տեղական բնակչությունը ծանոթ չեր։ Միայն մալարիայի



դեմ ձեռնարկված պայքարի համար 1935 թվականին հատկացվել ե 7 միլիոն ռուբլի։

Անդրկովկասյան ֆեդերացիայի կազմում յեղած տարիների ընթացքում Ադրբեջանի հանրապետությունը կերպարանափոխվել ե, անհամեմատ ավելի բարձր աստիճանի հասնելով։ Բոլորովին վերացվել ու անհետացվել ե թուրքերի և հայերի միջև յեղած ազգային յերկպառակությունը, որը տևել եր մի ամբողջ պատմական շրջան։ Ժողովուրդների բարեկամությունն ու յեղբայրությունը, որոնք հաստատվել են ԽՍՀ Միության մեջ, իրենց հաղթանակն են տոնում նաև Ադրբեջանում։

Անդրկովկասյան ֆեդերացիայի առաջ դրված նպատակներն ու խնդիրները լիովին իրագործված են։ Ահա թե ինչու, ըստ նոր ստալինյան Սահմանադրության նախագծի, Վրաստանը, Հայաստանը և Ադրբեջանը մտնելու յեն ԽՍՀՄ մեջ անմիջական կերպով, որպես խորհրդային դաշնակից հանրապետություններ։

Մինչև հեղափոխությունը Ռուսաստանի շատ ժողովուրդներ քոչվորական կյանք էին վարում․ մոտ 10 միլիոն մարդ ապրում էին քոչվորական կամ կիսաքոչվորական կյանքով: Դրանք Ռուսաստանի առավել հետամնաց ժողովուրդներն էին։

Վերջին 3–4 տարվա ընթացքում հարյուրավոր միլիոններ են ծախսվել նստակյաց կյանքի անցած քոչվորների համար պայմաններ ստեղծելու նպատակով: Պետությունը նրանց օգնություն է ցույց տալիս ոչ միայն վարկերով ու սերմացվով, այլև շինությունների համար ձրի փայտ բաց թողնելով և այլն:

Նստակյաց կյանքի անցնելու շնորհիվ, խոտացանության, արմատապտուղներ ցանելու և խոտ մթերելու հիման վրա զարգանում ու ամրանում է անասնապահական տնտեսությունը, որը տարերային աղետներից տուժում է նվազ չափով: Ընդ սմին



նստակյաց կյանքի անցկացումը կատարվում է կոլեկտիվացման հիման վրա և որպես դրա հետևանք՝ աճում են նախկին քոչվորների յեկամուտներն ու բարելավվում է նրանց կուլտուր-կենցաղային սպասարկումը:

Մինչև Հոկտեմբերը նախկին Ռուսաստանի ծայրամասերում կային 2–3 միլիոն քոչվորական և կիսաքոչվորական տնտեսություններ, վորոնք ընդգրկում էին ավելի քան 10 միլիոն բնակչություն: 1936 թվին մնացել են քոչվորական և կիսաքոչվորական մոտ 450 հազար տնտեսություն, վորոնք ընդգրկում են 2–2½ միլիոն հոգի:

Ղազախստանը ցայտուն օրինակն է այն ռայոնների վերելքի, վորտեղ անցյալում գերակշռելիս է յեղել քոչվորական և կիսաքոչվորական տնտեսությունը:

Մինչև հեղափոխությունը Ղազախստանը մի ամայի ու աղքատ յերկիր էր: Այդ յերկրի ընդերքի հսկայական հարստությունները հազարամյակներ քնած էին մնում և

չէյին օգտագործվում: Ղազախ ժողովուրդը տառապում էր ցարական Ռուսաստանի ռազմա-ֆեոդալական ուժասպառ անող լծի տակ, ղազախ խաների ու բայերի լծի տակ: Ցարական կառավարիչները, խաների, բայերի ու հոգևորականության հետ դաշնակցած, դիտավորյալ կերպով պաշտպանում էյին հին սովորույթները (արյան վրեժը, ղալիմը, կանանց «առևանգումը»), արմատացնում էյին մասսաների տգիտությունն ու խավարամտությունը: Ցարական կառավարությունը ղազախներից խլել էր նրանց լավագույն հողերը (ընդամենը ժողովրդից խլված էր 45 միլիոն հեկտար հող), իսկ իրենց քշել էյին սարերն ու անպտուղ անապատները: Խլված հողերը տըրվում էյին Ռուսաստանից յեկած վերաբնակիչներին, այդ հողերի վրա կազմակերպում էյին զինվորական ավաններ, նպատակ ունենալով ցարական կառավարության հենարան ստեղծել՝ այդ ընդարձակ յերկիրն իր տիրապետության տակ պահելու համար:



Նույն այդ նպատակով ցարիզմը բորբոքում էր ազգային թշնամանքը, ռուս վերաբնակիչներին լարելով ղազախների դեմ:

Ցարական կառավարությունն այսպիսի հրահանգներ էր տալիս իր սատրապներին՝ «Յեթե բաշկիրների կամ կիրգիզների (ղազախների) մեջ խլրտում նկատվի, ապա մի ժողովուրդը հանեք մյուսի դեմ, խնայելով ռուսական զորքերը:

Ղազախստանում վոչ մի արդյունաբերություն չկար, բացառությամբ ցինկի փոքրածավալ հանքերի մշակության, վորոնք գտնվում էյին Ռիդդերյան կոնցեսիայում և ցարիզմի կողմից շահագործման էյին տըրված օտարերկրյա կապիտալին: Քոչվոր ղազախների գոյության աղբյուր հանդիսանում էր անասնապահությունը, վորն էքստենսիվ տնտեսության պայմաններում անասնապահներին դնում էր կատարյալ կախման մեջ տարերքից· անասունները հազարներով կոտորվում էյին ձմռան ցրտերից ու կերի

պակասությունից, անասնապահներին դատապարտելով սովի ու աղքատության։

Սոցիալիստական հեղափոխության, ռուսական պրոլետարիատի հսկայական օգնության և մեր կուսակցության ու խորհրդային կառավարության իմաստուն ղեկավարության, ղազախ աշխատավորության նկատմամբ ժողովուրդների առաջնորդ ընկեր Ստալինի ունեցած ամենօրյա հոգատարության շնորհիվ Ղազախստանը ձեռք է բերել իսկապես հսկայական հաջողություններ, վորոնք առանձնապես շլացուցիչ են յերեկվա հետամնացության ու ծեծկվածության ֆոնի վրա։ Ղազախստանում վերջին 10 տարվա ընթացքում պետության կատարած կապիտալ ներդրումները կազմում են 4·124 միլիոն ռուբլի։ Ղազախստանի բյուջեն 1925-26 թ. կազմում էր 31,5 միլիոն ռուբլի, այնինչ 1935 թվին աճեց ու հասավ 405 միլիոն ռուբլու, այսինքն ավելացավ 12,8 անգամ։

Պետական արդյունաբերության համա-



խառն (ընդհանուր) արտադրանքը 1920 թվին հավասար էր 33,1 միլիոն ռուբլու, իսկ այնուհետև մեծ թափով աճեց և 1935 թվին հասավ 350–360 միլիոն ռուբլու (1926-27 թ. անփոփոխ գներով)։

Յերկրում ստեղծվել են արդյունաբերության բոլորովին նոր ճյուղեր, ինչպես են՝ ածխարդյունաբերությունը, քիմիական, շաքարի, մսի, ձկան արդյունաբերությունը։

Քարածխի հանույթը 1926 թվին հավասար էր 85 հազար տոննի, իսկ 1935 թվին հասավ 2·570 հազար տոննի. Նույն ժամանակամիջոցում նավթի հանույթը 30,3 հազար տոննից հասել է 400 հազար տոննի, արճիճի հանույթը—61,3 տոննից՝ 26 հազար տոննի։

Պղնձի արդյունաբերություն 1920 թվականին չկար, իսկ 1935 թվականին ձուլվել է 6·800 տոնն սև պղինձ։ Ձկան վորսը 1920 թվին հավասար էր 350 հազար ցենտների, իսկ 1935 թվին հասել էր 1·139 հազար ցենտների։ Շաքարի արտադրություն Ղազախստանում բոլորովին չկար, իսկ 1935

թվին արտադրվել է 13·690 տոնն շաքարավազ։

Աճում և զարգանում է նաև տրանսպորտը։ Յերկաթուղիների յերկարությունը 1913 թվականին 2·042 կիլոմետր եր, իսկ 1935 թվի հունվարի 1-ին հասցվել եր արդեն 5·267 կիլոմետրի։ Միմիայն ընթացիկ տարում Ղազախստանի յերկաթուղիների աճը կազմելու յե 757 կիլոմետր։

Հանրապետության ժողովրդական տնտեսության և ինդուստրացման աճման հետ միաժամանակ աճում են պրոլետարիատի կադրերը։ 1927 թվի հունվարի 1-ին Ղազախստանի պրոլետարիատի թիվը հավասար եր 216 հազարի, իսկ 1935 թվականի հուլիսի 1-ին նա կազմում եր արդեն 680 հազար։ Նույն այդ ժամանակամիջոցում ղազախական պրոլետարիատի տեսակարար կշիռը 30,7%-ից բարձրացել է 40,7%-ի։

Կոլտնտեսությունները Ղազախստանում միավորել են տնտեսությունների ավելի քան 90%-ը։ Ստեղծված է հզոր խորհտնտեսական հատված։



Աճում է տրակտորային և մեքենական պարկի հզորությունը։ Վերջին տեղեկությունների համաձայն այս հանրապետության գյուղատնտեսությունն ունի 16·580 տրակտոր, 3·001 կոմբայն և 3·176 ավտոմեքենա։

Ցանքի տարածությունը 1929 թ. հետ համեմատած՝ ավելացել է 850 հազար հեկտարով, իսկ ցանքի տարածության առավելագույն նվազման տարու (1922–1923թթ.) հետ համեմատած՝ ավելի քան 3 միլիոն հեկտարով։

Վերջին յերկու տարվա ընթացքում անասունների ընդհանուր թիվը Ղազախստանում աճել է և 5·119,1 հազարից հասել է 7·111,2 հազարի, ըստ վորում կոլտնտեսություններում և խորհտնտեսություններում միավորված է այդ անասունների 66,7%-ը։ Կուսակցության ու կառավարության ոգնության և անասնապահության ենտուզիաստ-առաջավորների ու կոլտնտեսականների ամբողջ մասսայի անձնվեր աշխատանքի

հետևանքով ճակատական հաջողություններ են ձեռք բերվել կովազրկության վերացման գործում։ 1932 թվի սկզբներին կովազուրկ կոլտնտեսականները կազմում էին 87%, այնինչ 1935 թվի հունվարի 1-ին դրանք արդեն միայն 18% էին, իսկ ղազախ կոլտնտեսականներից միայն 17,1%-ն էր կովազուրկ։

Ղազախստանի կոլտնտեսությունների և խորհտնտեսությունների մեծամասնությունն արդեն ամուր վոտք է դրել յեկամտաբերության ուղին, կոլտնտեսականների ունևորության արագ բարձրացման ուղին։

Պակաս ցուցանշական չեն նաև կուլտուրական հեղափոխության բնագավառում ձեռք բերված հաջողությունները։ Ղազախստանի բնակչության գրագիտությունը 1935 թվականին կազմում էր 61%։ Իսկ բուն ղազախ բնակչության գրագիտության տոկոսը 1920 թվի 3,1-ից բարձրացել և 1935 թվին հասել է 49-ի։

Ղազախստանի տերիտորիայում 1935



թվականին կար արդեն 7·168 դպրոց 640·230 սովորողներով, վորոնց 41%-ը ղազախներ էին։

Նախահեղափոխական Ղազախստանում բարձրագույն դպրոց բոլորովին չի յեղել, իսկ 1935 թվին այդտեղ կար արդեն 20 բարձրագույն դպրոց 3· 665 ուսանողով, վորոնցից 1·783 հոգին ղազախներ էին։

1933 թվականին Ղազախստանն ուներ 196 բժիշկ և 98 հիվանդանոց 1·666 մահճակալով, իսկ 1935 թվին՝ արդեն 962 բժիշկ և 298 հիվանդանոց 10·200 մահճակալով։

Ղազախ ժողովրդի արվեստը, վոր մինչհեղափոխությունը հալածված էր, ներկայումս ճոխ ծաղկման է հասել։

Ղազախական ազգային թատրոնը ցույց տվեց այդ ազգի ժողովրդական ստեղծագործության հսկայական վերելքը, և այդ թատրոնի հաջողությունները նշվեցին այն բարձր պարգևներով, վոր նրա ստեղծողներն ու աշխատողներն ստացան խորհրդային կառավարությունից։

Միության չքանշաններով պարգևատրվել են Ղազախստանի ավելի քան 200 ստախանովականներ, որոնց թվում կան համամիութենական հռչակ ստացած մարդիկ:

## ԿԻՐԳԻԶԻԱ

Շատ կարճ կխոսենք մեկ ուրիշ ժողովրդի՝ կիրգիզների մասին: Ղազախների պես կիրգիզ ժողովուրդն ևս յենթակա յեր ցարական Ռուսաստանի բացառիկ թալանին ու բռնություններին, որի հետևանքով կիրգիզների զգալի մասը փախավ Չինաստան, որտեղ նրանց սպասում եյին ավելի տանջանքներն ու դաժանագույն շահագործումը:

Կիրգիզների հայրենիք վերադառնալը հնարավոր դարձավ միայն հաղթական Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունից հետո: Այդ վերադարձը հիմնականում ավարտվեց 1920 թվին:

Ավելի քան 20 տարվա ընթացքում, այն և 1897 թվից մինչև կիրգիզների վերադարձը



Չինաստանից, կիրգիզ բնակչության թիվը նվազեց համարյա յերեսուն տոկոսով:

Այս է այն արդյունքը, վոր տվեց ցարական քաղաքականության տարածումը «քաբընակ վայրենի» կիրգիզների շրջանում, ինչպես անվանում եյին կիրգիզ ժողովրդին ռուսական գաղութարարները:

Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունը վերածնեց կիրգիզ ժողովուրդը վորպես ազգ, փրկեց նրան կոտորվելուց և գլխովին բնաջնջվելուց:

Կիրգիզիայի բոլշևիկները և նրանց ղեկավարությամբ հանրապետության բոլոր աշխատավորներն անդադրում աշխատում եյին, վորպեսզի իրագործեն մեծ Ստալինի ցուցումը՝ Կիրգիզիան դարձնեն բարգավաճ սոցիալիստական հանրապետություն: Կիրգիզ ժողովրդին անզնահատելի յեղբայրական ոգնություն ցույց տվեց մեծ ռուս ժողովուրդը:

Կիրգիզիան անցել է տնտեսական և կուլտուրական զարգացման վիթխարի ճանապարհ:

Կոլեկտիվացված է հանրապետության գյուղացիական տնտեսությունների ավելի քան 80%-ը: Կոլտնտեսական դաշտերն սպասարկում են 38 մեքենատրակտորային կայաններ, վորոնց մեքենաների պարկն ունի 47 հազար ձիու ուժի կարողություն: Տասը տարի սրանից առաջ հանրապետության ցանքի տարածությունը կազմում էր 325 հազար հեկտար, իսկ 1936 թվին այդ տարածությունը հասել է 1 միլիոն հեկտարի: Մինչև հեղափոխությունը Կիրգիզիան ցանում էր մեկ և կես—երկու հազար հեկտար բամբակ, իսկ այժմ ցանում է՝ 64 հազար հեկտար բամբակ, 12 հազար հեկտար ճակընդեղ, 10 հազար հեկտար նոր կեղևատու մշակույթներ:

Կիրգիզիան, դա—լեռնային անասնապահության երկիր է: Հանրապետությունն ունի 12 միլիոն հեկտար ալպիական արոտավայրեր, վորոնք կարող են կերակրել վոչ-պակաս, քան 40 միլիոն գլուխ վոչխար:



Անցած տարում Կիրգիզիան հասավ անասունների քանակի մեծ աճման. Հանրապետության մեջ ձիերի քանակն աճել է 6%-ով, մտրուկներինը (քուռակներ)՝ 69%-ով, խոշոր եղջերավոր անասուններինը՝ 12%-ով, հորթերինը՝ 23%-ով, վոչխարներինը՝ 21%-ով, գառներինը՝ 34%-ով, այծերինը՝ 43%-ով, ուլերինը՝ 82%-ով: Մատղաշ անասուններ աճեցնելու պետական պլանը կոլտնտեսային-գյուղացիական հատվածում գերակատարված է:

Հեղափոխությունից առաջ Կիրգիզիան վոչ մի արդյունաբերություն չուներ: Հիմա նա ունի միքանի ածխահանք, վորոնց տարեկան արտադրական պլանը հավասար է մեկ և կես միլիոն տոննի: Ածուխի պաշարը Կիրգիզիայում հասնում է 7—8 միլիարդ տոննի: Հայտնաբերված են՝ նավթի, ծծմբի, սնդիկի ու ծարիրի, արճիճի ու ինդիումի հանքավայրեր: Կառուցվել են՝ երկու հզոր շաքարի գործարան, մետաքսամանարան, բամբակազտիչ գործարան, մսի կոմբինատ՝ իր սառնարանով:

Փոխվել է յերկրի կերպարանքը, նրա քաղաքների, աուլների, ղշլաղների ու գյուղերի կերպարանքը: Ավելացել է հանրապետության քաղաքների բնակչությունը: Ածխարդյունաբերության շրջաններում, շաքարի գործարանների շուրջը ստեղծվել են նոր բանվորական ավաններ: Այն տեղերը, վորոնք մի քանի տարի սրանից առաջ քոչի տեղեր եյին, այդ տեղերում այժմ սպիտակին են տալիս մեքենատրակտորային կայանների և խորհտնտեսությունների նոր տնակները, կանաչին են տալիս ցորենի, ճակնդեղի, իտալական կանեփի ծիլերը: Այնտեղ, ուր առաջ հազիվ նշմարելի լեռնային կածանն եր դալարվում, ու անգամ յերկու հեծյալներ չեյին կարող միաժամանակ անցնել, այժմ ձգվում է կիրգիզական տրակտի լայն ժապավենը: Այդ տրակտը (ճանապարհը), վոր ունի 800 կիլոմետր յերկարություն, միացնելու յե հյուսիսային և հարավային Կիրգիզիան: Այդ ճանապարհի մոտ յերկու յերրորդն արդեն շինված է:



Կիրգիզիան, վոր դեռ մոտ անցյալում անգրագետ յերկիր եր, մեծ հաջողություններ է ձեռք բերել կուլտուրայի բնագավառում: Այնտեղ մենք արդեն ունենք 60% գրագետներ, իսկ 1937 թվականին անգրագիտությունը վերացված պետք է լինի: Նախահեղափոխական շրջանում Կիրգիզիայի տերիտորիայում կար ընդամենը 70 դպրոց, վորտեղ սովորում եյին ռուս կուլակների, կիրգիզական փոքր իշխանների և մոլլաների յերեխաները: Այժմ այդտեղ կա 1·600 տարրական դպրոց, 147 վոչ-լրիվ միջնակարգ դպրոց և 20 լրիվ միջնակարգ դպրոց: Մինչև տարվա վերջը կառուցվելու յե ևս 9 միջնակարգ դպրոց: Ընդամենը Կիրգիզիայում ներկայումս սովորում են 200 հազար յերեխաներ (10 տարի առաջ սովորում եյին միայն 23 հազար յերեխաներ): Բացի դրանից, Կիրգիզիայում կան մի քանի բարձրագույն դպրոցներ, այն է՝ մանկավարժական ինստիտուտ, գյուղատնտեսական ինստիտուտ և բարձրագույն կո-

մունիսական գյուղատնտեսական դպրոց, զանազան մասնագիտությունների 14 տեխնիկում, 4 բանֆակ, 4 կուսխորհրդային դպրոց: Ավելի քան 500 կիրգիզ ուսանողներ սովորում են Մոսկվայում, Լենինգրադում և Միության այլ քաղաքներում:

Մինչև հեղափոխությունը կիրգիզների լեզվով վոչ մի գիրք չկար, այդ լեզվով չեր հրատարակվում վո՛չ մի լրագիր: Հիմա հանրապետությունն ունի տասնյակներով շնորհալի խորհրդային գրողներ, բանաստեղծներ, դրամատուրգներ: Կիրգիզերեն լեզվով լույս են ընծայվում 4 հանրապետական և 20 շրջանային լրագիր ու 3 ժուռնալ:

Հանրապետության մայրաքաղաք Ֆրունզեյում ստեղծված են կիրգիզական պետական թատրոն և ազգային լարային գործիքների պետական նվագախումբ: Մոսկվայի թատերական ինստիտուտում սովորում են մի խումբ յերիտասարդ կիրգիզ դերասաններ:

Մեջ բերված տվյալները բացատրում են



մեզ, թե ինչու նոր ստալինյան Սահմանադրության նախագծով Ղազախստանն ու Կիրգիզիան պետք է վերածվեն խորհրդային դաշնակից հանրապետությունների:

Հեղափոխության ընթացքում Ղազախստանն ու Կիրգիզիան վիթխարի աճ են ունեցել, մինչդեռ խորհրդային սահմաններից դուրս, իմպերիալիստների լծի տակ գտնվող նրանց յեղբայրներին անկման ու մահացման դուռն են հասցրել: Այս հանրապետությունների օրինակն առանձնապես ցայտուն կերպով ցույց է տալիս բոլշևիկյան ազգային քաղաքականության վիթխարի հաջողությունները:

* * *

Մենք կանգ առանք Խորհրդային Միության միայն միքանի արևելյան դաշնակից հանրապետությունների հաջողությունների վրա, բայց նույնպիսի հաջողություններ ունեն Խորհրդային Միության նաև մյուս՝ առաջներում հետամնաց ժողովուրդները:

Ամենահետամնաց ժողովուրդները, օրինակ, Հյուսիսի քոչվոր ժողովուրդները, խորհրդային իշխանության օրով միանգամայն անճանաչելի յեն դառնում: Յեթե նրանք առաջ գլխովին անգրագետ եյին, ապա այժմ նրանց մեջ արդեն կան բարձրագույն կրթություն ունեցող մարդիկ, վորոնք իրենց ժողովրդի առաջնորդներն են և հայտնի յեն ամբողջ Խորհրդային Միությանը: Մենք ունենք հատուկ բարձրագույն դպրոց՝ Հյուսիսի ժողովուրդների ինստիտուտը, վորտեղ արդեն սովորում են մի քանի հարյուր հոգի: Գիտությունների ակադեմիայի ասպիրանտների մեջ մենք նույնպես ունենք այնպիսի մարդիկ, վորոնք դուրս են յեկել հյուսիսային քոչվոր ժողովուրդներից:

Մի շարք ժողովուրդներ մինչև անգամ իրենց գիրը չունեյին: Հեղափոխությունն այդ ժողովուրդներին գիր տվեց: Շատ ժողովուրդներ ունեյին հետամնաց արաբական տառեր: Հեղափոխությունը նրանց հնարավորություն տվեց յուրացնելու լատինականացրած տառերը, վորոնք զգալիորեն հեշտացնում են գրագետ դառնալու և առաջ գնալու հնարավորությունը: Հասկանալի յե, վոր կատարված է դեռևս վոչ ամբողջ աշխատանքը: Առաջներում հետամնաց յեղած ազգությունների մեջ մենք ունենք դեռ մեծ թվով անգրագետներ: Անհրաժեշտ է դեռևս մեծ աշխատանք: Բայց հիմքն արդեն դրված է, և առավել հետամնաց ժողովուրդների մեջ կուլտուրայի արմատացումը տարեց-տարի վիթխարի քայլերով առաջ է գնում:



Նոր Սահմանադրության նախագծի մեջ ընդգծված է, վոր «ԽՍՀՄ քաղաքացիների իրավահավասարությունը, տնտեսական, պետական, կուլտուրական ու հասարակական-քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում, անկախ նրանց ազգությունից ու ցեղից, անխախտ որենք է հանդիսանում»: Նոր Սահմանադրության նախագիծը չի սահմանափակվում այդ իրավունքների հավաստումով: Սահմանադրության մեջ ասված է.

«Իրավունքների վորևիցե ուղղակի կամ անուղղակի սահմանափակումը կամ, ընդհակառակը, ցեղական ու ազգային պատկանելությունից յելնելով՝ քաղաքացիների համար ուղղակի կամ անուղղակի առավելություններ սահմանելը, ինչպես նաև ցեղական ու ազգային բացառիկության կամ ատելության ու արհամարհանքի ամեն տեսակ քարոզ պատժվում է օրենքով»: *Ազգությունների իրավունքների խախտման համար պատժիչ միջոցների սահմանումը կհնչի վողջ աշխարհումը մեկ, վորպես դատապարտության մեծագույն մի ակտ ֆաշիստական խավարամոլների նկատմամբ, վորոնք քարոզում և կիրառում են կյանքում ամենառեակցիոն թեորիաներն այն մասին, թե ցեղերը հավասարարժեք չեն, թե «արիական», այսինքն՝ գերմանական ցեղը գերազանց է բոլոր մյուս ցեղերից։*

*Լենինյան-ստալինյան ազգային քաղաքականությունը, վորը ԽՍՀՄ-ում հասցրել է ազգային հավասարության և ազգային ա-*



*զատության*, կործանիչ հարված է հասցնում ֆաշիստական այն հերյուրանքներին, *թե վորոշ ցեղեր ու ժողովուրդներ գերազանց են մյուսներից*:

*Կուլտուրայի, ընդունակությունների և տաղանդների հսկայական ծաղկումը ԽՍՀՄ բոլոր ժողովուրդների մեջ* առարկայորեն ամբողջ աշխարհի առաջ մերկացնում է ֆաշիստական *ցեղային ժուլիկությունը*: «Ազգերի և ցեղերի լիակատար հավասարությունն իրագործելի յե, վորովհետև այն իրագործված է ԽՍՀՄ-ում» (*«Պրավդա»*):

*Զուր չէ, վոր գերմանական մամուլը թաքցնում է իր ընթերցողներից խորհրդային նոր Սահմանադրության նախագծի բովանդակությունը*:

*Կապիտալիզմը չի վոչնչացրել ազգային ճնշումը վոչ մի տեղ, անգամ ամենադեմոկրատիկ բուրժուական յերկրներում*: «*Կապիտալիզմի օրոք* չի կարելի *վոչնչացնել ազգային (և առհասարակ քաղաքական) ճնշումը*: *Դրա համար* անհրաժեշտ է *վո-*

չնչացնել դասակարգերը, այսինքն՝ սոցիալիզմ մտցնել» (Լենին)։ Օրինակի համար վերցրեք ԱՄՆ։ Այնտեղ ձևականապես նեգրերն իրավահավասար են։ Այնտեղ սահմանադրությունը նրանց համար սահմանափակումներ չի նախատեսում։ Իսկ իրակա՞նում։ Իրականում նեգրերը յենթարկվում են չլսված ծաղրանքի, նրանք յենթարկվում են Լինչի դատաստանի, այսինքն գազանային ինքնադատաստանի, վորը կատարվում է իշխանությունների թույլտվությամբ։ Նեգրերը փաստորեն իրավազուրկ են կյանքի բոլոր բնագավառներում, սպիտակամորթները նրանց վրա նայում են վորպես ստորին կարգի մարդկանց։

Իսկ յերբ մի ամերիկացի ինժեներ ըստ ամերիկյան բուրժուազիայի սովորության ԽՍՀՄ-ում ծեծեց մի նեգր բանվորի, ապա դա զայրույթի պոռթկում առաջ բերեց մեր յերկրի բոլոր աշխատավորների մեջ։

Շովինիզմի դեմ անխորտակելի պարսպի պես կանգնած է ԽՍՀՄ-ի ժողովուրդների



ամրացող բարեկամությունը, այդ ժողովուրդների ինտերնացիոնալ համախմբվածությունը։

Շովինիզմ քարոզելու և շովինիստական քաղաքականություն կիրառելու համար որենքով պատիժ տալը կարող է իրականացվել միայն հաղթանակած սոցիալիզմի յերկրում։

Մեր նոր Սահմանադրությունը հրճվանքով են դիմավորել աշխարհի բոլոր ճնշված և ստրկացված ժողովուրդներն ու ցեղերը, վորոնք մեկ անգամ ևս համոզվում են, վոր միայն խորհրդային իշխանությունն է ազգային ազատություն և ազգային հավասարություն բերում բոլոր ստրկացված ազգերին։

Մեր նոր Սահմանադրությունը հրճվանքով են դիմավորում բոլոր յերկրների բանվորներն ու գյուղացիները, նա առաջ է բերել բոլոր իսկական դեմոկրատիկ տարրերի ջերմ համակրանքն ամբողջ աշխարհում։

Նոր Սահմանադրությունը մեր սքանչելի հայրենիքի ժողովուրդներին ել ավելի կհա-

մախմըի կուսակցության ու մեծ Ստալինի շուրջը: Այդ Սահմանադրությունն ամբողջ աշխարհի առաջ ցուցադրում է սոցիալիզմի մեծ հաղթությունները: Նա ակնառու ցույց է տալիս բոլոր յերկրների աշխատավորներին, որ միայն սոցիալիզմի հաղթանակն է ապահովում ժողովուրդներին իսկական ազատություն, իսկական ժողովրդավարություն, իսկական յեղբայրական դաշինք և աշխատավորներին՝ յերջանիկ ու բերկրալի կյանք:

